Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

8

ՕԳՈՍՏՈՍ

1990

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ԽՄԿԿ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՑ ՀԵՏՈ



ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐ



ՀԻՇԱՐԺԱՆ ՏԱՐԵԹՎԵՐ



ԺԱՄԱՆԱԿ ԵՎ ՄԱՐԴԻԿ



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագիր)
ԱՍԱՏՐՅԱՆ Գ. Ե.
ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ Լ. Բ. (գլխավոր խմբագրի տեղակալ)
ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե.
ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Լ. Մ.
ՀԱԿՈԲՅԱՆ Ռ. Յա.
ՀՈՎՍԵՓՅԱՆ Ս. Գ.
ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.
ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա.
ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Մ. Դ.
ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ.
ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ.
ՍԻՄՈՆՅԱՆ Ս. Ա. (պատասխանատու քարտուղար)
ՖԱՆԱՐՋՅԱՆ Վ. Բ.

Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ

ՈՐՈՇՈՒՄԸ

ՀԱՅԿԱԿԱՆ ԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀԻ ՄԱՍԻՆ

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհուրդը **որոշում է**.

Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահ ընտրել Լևոն Հակոբի **Տեր-Պետրոսյանին**:

4 օգոստոսի 1990 թ., ք. Երևան



# Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահ ԼԵՎՈՆ ՀԱԿՈԲԻ ՏԵՐ-ՊԵՏՐՈՍՅԱՆ

Ծնվել է 1945 թ. հունվարի 9-ին, Սիրիայի Հալեպ քաղաքում: 1946 թ. ընտանիքով հայրենադարձվել է Հայաստան: 1963 թ. ավարտել է Երևանի № 17 միջնակարգ դպրոցը, 1968-ին՝ Երևանի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետի արևելագիտության բաժինը: 1971 թ. ավարտել է Լենինգրադի արևելագիտության ինստիտուտի ասպիրանտուրան՝ հայ-ասորական բանասիրություն մասնագիտությամբ: Այս 1972 թ. Լենինգրադի համալսարանում պաշտպանել է թեկնածուական դիսերտացիա, ստացել բանասիրական գիտությունների թեկնածուի գիտական աստիճան: 1972-ից մինչև 1978 թ. աշխատել է Հայաստանի ԳԱ գրականության ինստիտուտում որպես կրտսեր գիտաշխատող: 1978-ից մինչև 1985 թ.

վարել է Մաշտոցի անվան մատենադարանի գիտական քարտուղարի պաշտոնը: 1985 թվականից ավագ գիտաշխատող է Մատենադարանում:

1987 թ. Լենինգրադի համալսարանում պաշտպանել է դոկտորական դիսերտացիա՝ արժանանալով բանասիրական գիտությունների դոկտորի գիտական աստիճանի:

Հեղինակ է հայ-ասորական մշակութային հարաբերություններին և Կիլիկյան Հայկական պետությանը նվիրված վեց մենագրությունների և ավելի քան 70 գիտական հոդվածների՝ հայերեն, ռուսերեն, ֆրանսերեն լեզուներով: Անդամ է Հայաստանի գրողների միության, ԽՍՀՄ արևելագետների ասոցիացիայի և ֆրանսիական ասիական ընկերության:

Քաղաքական գործունեությունը սկսել է 1960-ական թվականներից, մասնակցել է ուսանողական շարժումներին, 1966-ին ենթարկվել 10-օրյա բանտարկության: 1988 թ. փետրվարից ղեկավարել է Մատենադարանի «Ղարաբաղ» կոմիտեն, նույն թվականի մայիսից ընդգրկվել է ղարաբաղյան շարժման Հայաստանի կոմիտեի կազմում: 1988 թ. դեկտեմբերի 10-ից մինչև 1989 թ. մայիսի 31-ը արցախյան շարժման մյուս առաջամարտիկների հետ բանտարկություն է կրել Մոսկվայում:

1989 թ. օգոստոսի 27-ին ընտրվել է ՀԽՍՀ Գերագույն խորհրդի պատգամավոր, 1990 թ. փետրվարին՝ Գերագույն խորհրդի նախագահության անդամ: 1989 թ. նոյեմբերին ընտրվել է Հայոց համազգային շարժման վարչության անդամ, ապա՝ վարչության նախագահ:

1990 թ. մայիսի 20-ին վերստին ընտրվել է հանրապետության Գերագույն խորհրդի ժողովրդական պատգամավոր:

Ամուսնացած է, ունի 15 տարեկան որդի:

## Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահ ԼԵՎՈՆ ՏԵՐ-ՊԵՏՐՈՍՅԱՆԻ ԴԻՄՈՒՄԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Սիրելի հայրենակիցներ,

Հայ ժողովրդի պատմության այս խռովահույզ, միաժամանակ հերոսական օրերին, դիմելով ձեզ, ես իմ պարտքն եմ համարում գլուխ խոնարհել ձեր հոգեկան կորովի, ձեր զոհողությունների, ձեր զգաստության առջև, որ դուք դրսևորեցիք մեր ազգային-ազատագրական պայքարի ներկա փուլի հորձանուտում:

Ձեր բոլորանվեր ջանքերը, ձեր կրած զրկանքները, ձեր վճռականությունն ու հաստատակամությունը նշանավորվեցին պատմական հաղթանակով, որ հաղթանակն է արդարության, դեմոկրատիայի և ազգային արժանապատվության:

Ես շնորհավորում եմ ձեզ հայոց անկախ պետականության հիմնարկեքի առիթով՝ կիսելով ձեր տոնական ցնծությունը և սեփական ուժերի նկատմամբ վերագտած վստահությունը, որ միակ հույսն է գալիք հաջողությունների:

Դրա հետ մեկտեղ կոչ եմ անում սառնասրտորեն գնահատել մեր հանրապետության ներկա ճգնաժամային իրավիճակը, որից դուրս գալու միակ գրավականը ժողովրդի համախմբումն է պետականության գաղափարի և նրա մարմնավորումը հանդիսացող ազգային խորհրդարանի շուրջ:

Ես վստահ եմ, որ մենք ի վիճակի ենք կարճ ժամանակամիջոցում սեփական ուժերով լուծելու հանրապետության ներքին կյանքին վերաբերող բարդ խնդիրները



և կարգավորելու ստեղծված պայթյունավտանգ իրավիճակը, պայմանով, որ բացառված լինի արտաքին միջամտությունը: Հիմք ունեմ ակնկալելու նաև, որ միութենական իշխանությունները ըմբռնումով կընկալեն մեր դիրքորոշումը:

Կոչ եմ անում բոլոր աշխարհազորայիններին՝ հավատարմության երդում տալ հանրապետության գերագույն իշխանության ատյանին, և մոռանալով ներքին հակասությունները, ձեռնպահ մնալ որևէ անխոհեմ գործողությունից: Հարկադրված եմ հիշեցնել նաև, որ մեր պետականության կայացումը վտանգող ոչ մի արկածախնդրություն չի ներվի ժողովրդի կողմից:

Կոչ եմ անում իրավապահ մարմիններին, հենվելով աշխարհազորի հիմնական մասը կազմող առողջ ուժերի վրա, ապահովել օրինականությունը հանրապետության տարածքում, որովհետև այսօր ոչ թե հուշակագրերով ու արմատական օրենսդրական նախաձեռնություններով, այլ իրադրությանը տիրապետելու կարողությամբ է, որ մենք աշխարհին պետք է ապացուցենք մեր ազգային իշխանության գոյությունը:

Եվ վերջապես կոչ եմ անում մեր ժրաջան աշխատավորությանը՝ ազգային-քաղաքական իղձերի իրականացման խնդիրները լիովին վստահել հանրապետության խորհրդարանին, վերագտնել իր հոգեկան անդորրը և լծվել խաղաղ, ստեղծագործ աշխատանքի, առանց որի սնանկ է ցանկացած ծրագիր, ցանկացած հեռանկար:

Մեզ սպասում է հուսալի ապագա, բայց այդ ապագան մենք պետք է կերտենք:

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

## ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

1990 թվականի հուլիսի 2-ից մինչև 13-ը Մոսկվայում տեղի ունեցավ Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության XXVIII համագումարը:

Համագումարը բացեց ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Կարծիքների փոխանակությունից հետո պատվիրակներն ընտրեցին համագումարի ղեկավար մարմիններ՝ նախագահություն, քարտուղարություն, խմբագրական, մանդատային հանձնաժողովներ:

Համագումարը քննարկեց պատվիրակությունների ներկայացուցիչների խորհրդակցության մշակած օրակարգը և, հաշվի առնելով լրացումները, այն հաստատեց հետևյալ տեսքով.

ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղաքական հաշվետվությունը ԽՄԿԿ XXVIII համագումարին և կուսակցության անելիքները:

ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամների ու անդամության թեկնածուների, Կենտկոմի քարտուղարների հաշվետվությունները:

ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:

ԽՄԿԿ-ի բյուջեի և ունեցվածքի մասին:

ԽՄԿԿ XXVIII համագումարի «Դեպի մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմ» ծրագրային հայտարարությունը:

ԽՄԿԿ կանոնադրությունը:

ԽՄԿԿ կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի կանոնադրությունը.

Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրությունները:

ԽՄԿԿ XXVIII համագումարի բանաձևեր, հայտարարություններ և դիմումներ:

Այնուհետև հաստատվեց համագումարի աշխատակարգը:

Օրակարգի առաջին հարցի վերաբերյալ զեկուցումով հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովը:

Համագումարը լսեց ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամների, անդամության թեկնածուների, Կենտկոմի քարտուղարների հաշվետվությունները:

Համագումարի մասնակիցները պսակներ դրեցին Վ. Ի. Լենինի դամբարանին:

Հաղորդագրություն լսվեց ԽՄԿԿ XXVIII համագումարի քարտուղարության աշխատանքի մասին:

Համագումարը լսեց և կարճատև բանավեճից հետո հաստատեց մանդատային հանձնաժողովի զեկուցումը: Համագումարը լսեց ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը, ինչպես նաև ԽՄԿԿ բյուջեի և ունեցվածքի մասին զեկուցումը:

Համագումարը կազմեց հիմնական կուսակցական փաստաթղթերի նախագծերի պատրաստման հանձնաժողով:

Համագումարում ստեղծված սեկցիաներում բանավեճ էր գնում կուսակցության կազմակերպական-քաղաքական նորացման, նրա գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման, խորհուրդների, հասարակական-քաղաքական կազմակերպությունների ու շարժումների հետ փոխգործակցության հարցերի շուրջը:



Մեծ մտահոգությամբ, կշռադատված էին քննարկվում արդի փուլում ԽՄԿԿ-ի ազգային քաղաքականության հարցերը:

Սուր վիճաբանություն էր տեղի ունենում վերակառուցման ժամանակաշրջանում կուսակցության սոցիալ-տնտեսական և ագրարային քաղաքականության հիմնահարցերի շուրջը:

Համակողմանիորեն քննարկվում և խորապես վերլուծվում էր ԽՄԿԿ-ի միջազգային գործունեությունը, որը նպատակամղված է արտասահմանյան առաջադիմական կուսակցությունների և շարժումների հետ նրա կապերի զարգացմանն ու ամրապնդմանը:

Պատվիրակների մշակած հանձնարարականներն ու առաջարկությունները քննարկվեցին համագումարի լիագումար նիստերում:

ԽՄԿԿ XXVIII համագումարին հասցեագրված նամակների և դիմումների բնույթի մասին տրվեց հաղորդում:

Մասսայական ինֆորմացիայի միջոցների կողմից համագումարի աշխատանքի ոչ բավականաչափ լայն, իսկ մի շարք դեպքերում նաև միտումնավոր լուսաբանման վերաբերյալ ստացված քննադատական դիտողությունների առթիվ բացատրություններ տրվեցին և կոնկրետ առաջարկներ արվեցին:

Այնուհետև լսվեցին համագումարում աշխատած սեկցիաների ներկայացուցիչների հետևյալ հաղորդումները. «Կուսակցության նորացումը», «Գաղափարախոսական աշխատանքը», «Սոցիալ-տնտեսական քաղաքականությունը», «ԽՄԿԿ ագրարային քաղաքականությունը», «Կուսակցությունը, խորհուրդները, հասարակական-քաղաքական կազմակերպություններն ու շարժումները», «ԽՄԿԿ ազգային քաղաքականությունը», «ԽՄԿԿ-ի միջազգային գործունեությունը» թեմաներով:

Համագումարը շարունակեց լսել ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամների պատասխաններն իրենց ուղղված հարցերին:

Ապա խմբագրական հանձնաժողովը համագումարին զեկուցեց կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղաքական հաշվետվության առթիվ ԽՄԿԿ XXVIII համագումարի բանաձևի նախագծի վրա կատարված աշխատանքի մասին:

Պատվիրակները որպես հիմք ընդունեցին Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղաքական հաշվետվության վերաբերյալ ԽՄԿԿ XXVIII համագումարի բանաձևի նախագիծը:

Համագումարը հաստատեց ԽՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:

Համագումարը լսեց և ի գիտություն ընդունեց ԽՄԿԿ XXVIII համագումարի մանդատային հանձնաժողովի հաղորդումը ստացված հարցումների կապակցությամբ որոշ պատվիրակների լիազորությունների ստուգման մասին:

Պատվիրակները համակողմանիորեն քննարկեցին և ընդունեցին համագումարի հետևյալ բանաձևերը. «Արդի փուլում կուսակցության ռազմական քաղաքականության հիմնական ուղղությունների մասին», «Ի պաշտպանություն դեմոկրատական իրավունքների, ընդդեմ կոմունիստների հալածանքների»:

Համագումարը համակողմանիորեն քննարկեց ԽՄԿԿ կանոնադրության նախագիծը և հաշվի առնելով փոփոխություններն ու լրացումները այն ընդունեց որպես հիմք: Համագումարը ընդունեց բանաձև ԽՄԿԿ XXVIII համագումարին ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղաքական հաշվետվության վերաբերյալ, ինչպես նաև «Դեպի մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմ» ծրագրային հայտարարությունը: Համագումարը բոլոր կոմունիստներին, կուսակցական կազմակերպություններին ու կուսակցական մարմիններին առաջարկեց մինչև ԽՄԿԿ-ի նոր ծրագրի ընդունելը ղեկավարվել այս փաստաթղթով:

Համագումարը առաջադրեց և քննարկեց կուսակցության կենտրոնական ղեկավար մարմինների կազմի թեկնածությունները:

Պատվիրակները մանրամասնորեն քննարկեցին ԽՄԿԿ կանոնադրության նախագծի առթիվ հանձնաժողովի ներկայացրած ուղղումները: Փաստաթղթի առանձին հոդվածների ձևակերպումների վերջնական ճշգրտումից հետո համագումարն ամբողջությամբ վերցված հաստատեց Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության կանոնադրությունը:

Այնուհետև համագումարը հաստատեց ԽՄԿԿ կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի կանոնադրությունը:

ԽՄԿԿ XXVIII համագումարը առանձին որոշմամբ բոլոր պատվիրակներին հանձնարարեց ակտիվ մասնակցություն ցուցաբերել իր գաղափարների և որոշումների պրոպագանդմանը և կոնկրետ կենսագործմանը: Այնուհետև համագումարն ընդունեց «ԽՄԿԿ մասսայական ինֆորմացիայի միջոցների մասին» բանաձևը:

Համակողմանի, կոնստրուկտիվ քննարկման արդյունքների հիման վրա համագումարն ընդունեց «Կրթության, գիտության ու մշակույթի ասպարեզում ԽՄԿԿ քաղաքականության մասին», «ԽՄԿԿ-ի երիտասարդական քաղաքականության մասին», «Չեռնոբիլի ատոմակայանի աղետի քաղաքական գնահատման և դրա հետևանքների վերացման աշխատանքների ընթացքի մասին», «Դեմոկրատական ազգային քաղաքականությունը ժողովուրդների կամավոր միության, հաշտության ու համաձայնության ուղին է» բանաձևերը:

Համագումարի քարտուղարության առաջարկով պատվիրակներն ընդունեցին որոշում «ԽՄԿԿ XXVIII համագումարին աշխատավորների հասցեագրած նամակների մասին»:

Համագումարն ընդունեց որոշում «ԽՄԿԿ նոր ծրագրի նախապատրաստման մասին» և կազմեց այդ հիմնարար կուսակցական փաստաթղթի նախագծի մշակման հանձնաժողով:

Համագումարը երկընտրանքային հիմունքներով ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրեց Մ. Ս. Գորբաչովին, ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի տեղակալ՝ Վ. Ա. Իվաշկոյին:

Համագումարը հաստատեց հաշվիչ հանձնաժողովի արձանագրությունները, սահմանելով ԽՄԿԿ Կենտկոմի թվական կազմը՝ 412 մարդ և ԽՄԿԿ ԿՎՀ-ի թվական կազմը՝ 165 մարդ:

ԽՄԿԿ կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի պլենումը ընտրեց ԽՄԿԿ ԿՎՀ-ի նախագահություն. նախագահ ընտրվեց Բ. Կ. Պուգոն:

Համագումարում եզրափակման խոսքով հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Դրանով Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության XXVIII համագումարն ավարտեց իր աշխատանքը:

---

# ԾԱՎԱԼԵԼ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՈՒՂԻՈՎ

## ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը

## «ԽՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԽՄԿԿ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ»

Ընկերներ, հինգ տարում մենք հեղափոխական ցատկ կատարեցինք կյանքի բոլոր ոլորտներում: Եվ դա մեզ հնարավորություն տվեց դուրս գալ գլխավոր դարձակետը: Այսօր հարցն այսպես է դրված. կամ խորհրդային հասարակությունը առաջ կգնա սկսված խոր վերափոխումների ուղիով, և այնժամ, համոզված եմ, մեր մեծ բազմազգ պետությանը արժանավայել ապագա է սպասում, կամ էլ կհաղթեն հակավերակառուցողական ուժերը, և այնժամ երկրին, ժողովրդին, եկեք չվախենանք ասել ճշմարտությունը, մռայլ ժամանակներ են սպասում:

Այնպես որ շիտակ խոսակցություն պետք է ունենանք: Մեր գնահատականներն ու եզրակացությունները հետաձգել չենք կարող, հարկավոր է մանրամասնորեն քննության առնել վերակառուցման ներկա փուլի բոլոր արմատական հարցերը, որոնք գտնվում էին նաև նախահամագումարյան բանավեճի կենտրոնում:

Արդարացվա՞ծ է արդյոք 1985 թվականի ապրիլին սկսված շրջադարձը: Մենք այսօր ի՞նչ սկզբունքներով ենք մտադիր ղեկավարվել ներքին ու արտաքին քաղաքականության մեջ: Ինչպե՞ս հաղթահարենք ճգնաժամային երևույթները, որոնք անդրադառնում են ժողովրդի կյանքի վրա և արդարացի դժգոհություն առաջ բերում: Ինչպիսի՞ն է մեր հայրենիքի ճակատագիրը և ինչպե՞ս ենք կառուցելու սովերեն պետությունների միությունը:

Ո՞րն է կուսակցության տեղը նոր պայմաններում, ինչպիսի՞ն պետք է դառնա նա ինքը քաղաքականապես, գաղափարապես և կազմակերպորեն, մենք ի՞նչ պետք է անենք ԽՄԿԿ-ի՝ որպես աշխատավորների հեղափոխական կազմակերպության, ժողովրդի վստահությունը վայելող կազմակերպության, վերածնման համար:

### I.

### ԸՆԹԱՑԻԿ ՊԱՀԻ ՄԱՍԻՆ

Այն իրավիճակը, որի մեջ այսօր հայտնվել է մեր հասարակությունը, սուր վեճերի, ապրումների, նաև փոխադարձաբար իրար բացառող գնահատումների առարկա է: Ընթացիկ պահի մեջ են, եթե ուզում եք, բոլոր տագնապների և հոգսերի արմատները: Այստեղ է նաև այն հարցի պատասխանը, թե ինչ պետք է մենք անենք, ինչպես այսուհետև ապրենք: Ընթացիկ պահի առանձնահատկությունը ճիշտ հասկանալ կարելի է միայն հաշվի առնելով հինգ տարվա ընթացքում հասարակության մեջ կատարված փոփոխությունների մասշտաբն ու ողջ բազմազանությունը: Իսկապես, երկրում կատարվել են հեղափոխական փոփոխություններ, և մենք պետք է տեսնենք վերափոխումների ամբողջ պատկերը:

Սոցիալիզմի ստալինյան մոդելին փոխարինելու է գալիս ազատ մարդկանց քաղաքացիական հասարակությունը: Արմատապես վերափոխվում է քաղաքական համակարգը, հաստատվում իսկական դեմոկրատիա՝ ազատ ընտրություններով, բազմակուսակցականությամբ, մարդու իրավունքներով, վերածնվում է ռեալ ժողովրդապետությունը:

նորի կառուցումը: Ուրեմն, հարկավոր է գործել ավելի վճռականորեն, քանի որ հապաղումը կարող է երկրում իրավիճակը սրել:

Այն բանի լուրջ պատճառներից մեկը, թե ինչու է շատ բան մեզ այնքան դժվարությամբ տրվում, կառավարչական կառուցվածքների բյուրոկրատական խավի և նրա հետ կապված սոցիալական ուժերի կողմից վերափոխումներին ցույց տրվող դիմադրությունն է: Իհարկե, մենք մեզ հաշիվ էինք տալիս, որ վերակառուցումն անխուսափելիորեն կշոշափի նրանց շահերը, ում ձեռքին գտնվում էր իրական իշխանությունը և ովքեր ժողովրդի անունից տնօրինում էին հանրային հարստությունը:

Այն ղեկավար կադրերի մի մասի ներկա դիրքորոշումը, որոնք կապված են անցյալին և ոչ մի կերպ չեն կարողանում միանալ վերակառուցման պրոցեսներին, առավել ևս դրանք չեն ընդունում ոչ քաղաքականապես, ոչ հոգեբանորեն, մեզ համար պարզ է: Եվ մենք պետք է տեսնենք, որ եթե չհաղթահարենք նման աշխատողների դիրքորոշումը, իսկ այդպիսիք, ինչպես ես արդեն ասացի, կան կառավարչական կառուցվածքի բոլոր էշելոններում, վերակառուցման պրոցեսները կսրվեն:

Այդ հարցում ԽՄԿԿ-ի դիրքորոշումը սկզբունքային նշանակություն ունի: Իհարկե, մենք չենք կարող թույլ տալ պարզունակացված գնահատականներ ու հետևություններ: Առավել ևս կադրերի հալածանքներ: Եղել են և կան որակյալ մասնագետներ, որոնք օգտակար քիչ բան չեն արել երկրի համար: Նրանք հիմա էլ են իրենց խելքն ու տաղանդը նվիրաբերում վերակառուցման գործին, շատերը ականատու արդյունքների են հասել արդեն այս տարիներին, իսկ նրանք ոչ թե տասնյակներ, ոչ թե հարյուրներ են, այլ հազարներ: Բայց ես խոսում եմ նրանց մասին, ովքեր համառորեն կառչած են անցյալին, կանգնած են հասարակության մեջ տեղի ունեցող վերափոխումների ճանապարհին: Ավելին, ջանում են իրենց պահպանողական դիրքորոշումը պաշտպանել ժողովրդի շահերի համար, գաղափարախոսական սկզբունքների անաղարտության համար պայքարի դրոշով:

Վերակառուցման խնդիրների իրականացման գործում լուրջ բարդություն է մտցնում ազգայնական և ամեն կարգի դեստրուկտիվ ուժերի ակտիվանալը, որոնք ձգտում են հասարակական էներգիան օգտագործել իրենց շահադիտական նպատակներով և դրանց հասնելու համար կանգ չեն առնում անգամ իրադրության ապակայունացման առջև: Ահա թե ինչու մերթ այստեղ, մերթ այնտեղ կոնֆլիկտներ են բռնկում:

Չպետք է անտեսել նաև այն, որ հասարակության մեջ երևան են եկել ուժեր, որոնք մեզ հրում են դեպի բուրժուական կարգեր, ներկա բարդ իրավիճակից դուրս գալը շաղկապում են երկիրը կապիտալիստական ռելսերի վրա փոխադրելու հետ:

Այժմ, երբ մենք թևակոխում ենք կյանքի բոլոր ոլորտներում վերափոխումների վճռական փուլ, հարկավոր է ուշադրություն նվիրել նաև մի այնպիսի երևույթի, ինչպիսին է ամենատարբեր հոսանքների, տարբեր դեստրուկտիվ ծայրահեղական ուժերի փոխգործակցությանը: Նրանք անգամ միավորվում են, որպեսզի մոլորության մեջ գցեն մարդկանց, շեղեն վերակառուցման գլխավոր ուղղությունից:

Սա նույնպես պետք է մեզ հասկանալի լինի, քանի որ, անցնելով վճռական վերափոխումների փուլ, կուսակցությունը դրանով իսկ խլում է վերակառուցման ստրատեգիական նախաձեռնությունը և նորից հանդես գալիս որպես ժողովրդի օգտին պատասխանատու լուծումներ առաջարկող հասարակության համախմբող ուժ:

Մի խոսքով, ընկերներ, երբ մենք գնահատում ենք ընթացիկ պահը, ձգտում ենք հասկանալ ճգնաժամային երևույթների պատճառները, ապա պետք է տեսնենք, որ այստեղ սերտ միավորվել են անցյալն ու ներկան, անցումային ժամանակաշրջանի հակասությունները, շահերի, քաղաքական հաշիվների, օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնների բարդ միահյուսումը:

Կցանկանայի ընդգծել, որ թե կուսակցության, թե հասարակության մեջ կա այն բանի ըմբռնումը, որ մենք այժմ պետք է միավորենք բոլոր առողջ ուժերն ու որքան կարելի է շուտ դուրս գանք զարգացման այս դժվարին գոտուց: Ես կարծում եմ, եթե մեր վերակառուցումը անգամ պարտություն կրի, ապա միայն այն դեպքում, եթե ոմանց հաջողվի պառակտել ամուր կերպով նրա դիրքերում կանգնած դեմոկրատական ուժերը: Մեզ պետք է տնտեսական ռեֆորմի իրականացման շրջանակներում գործնական և արդյունավետ միջոցառումների փոխկապակցված համալիր: Պետք են երկրի քաղաքական ու սոցիալական իրադրության կայունացման, օրինականության և իրավակարգի ամրապնդման անհետաձգելի միջոցառումներ:

Հարկավոր է, առանց մի օր իսկ հետաձգելու, աշխատել միութենական նոր դաշնագրի նախապատրաստման վրա, որը դառնա մեր բազմազգ պետության խոր



վերափոխումների հիմքը: Առանձնակի առաջնություն է հարկավոր տալ պարենային պրոբլեմի լուծմանն ու արդյունաբերական ապրանքներով բնակչության մատակարարումը բարելավելուն: Հենց այդ կենսական առաջադրանքների իրականացման վրա պետք է կենտրոնացվեն բոլոր կուսակցական կազմակերպությունների ջանքերը:

Հարկավոր է ամեն ինչ անել, որպեսզի վերակառուցումը զարգանա որպես խաղաղ հեղափոխություն, երկիրը սոցիալիստական ընտրության շրջանակներում նոր որակի փոխադրելով առանց ցնցումների, որոնց գլխավոր զոհը միշտ ժողովուրդն է լինում: Հարկավոր է բոլոր դեմոկրատական պայմանները ստեղծել, որպեսզի իշխանության գլուխ անցնեն իրոք տաղանդավոր մարդիկ, վերակառուցմանը նվիրված, ժամանակի ոգին, մասսաների տրամադրությունն արտահայտող, գործ անելու ընդունակ մարդիկ:

Մեզ, ինչպես երբեք, պետք է հասարակության մեջ մեծագույն աստիճանի համաձայնություն: Այժմ ժամանակը չէ՛ վերջնագրերի ու կոնֆլիկտների, չմտածված գործողությունների, որոնք տարանջատում են մարդկանց, էլ ավելի են բարդացնում իրավիճակը: Հասարակության մեջ ամրապնդվում է տրամադրությունը հօգուտ ջանքերի միավորման: Ես կցանկանայի այս ամբիոնից դիմել աշխագործների կոլեկտիվներին, կոչ անելով պահպանել այդ տրամադրվածությունը՝ գիտակցելով, որ իրենց կողմից արդարացիորեն առաջադրված հարցերի լուծման գործը պետք է ավարտին հասցվի:

Սրանք են, ընկերներ, երկրում ընթացիկ պահի վերաբերյալ նկատառումները ամենասեղմ ձևով:

## II.

## ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ. ՓՈՐՁԸ ԵՎ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

Ընկերներ, կուսակցության XXVII համագումարի մշակած ստրատեգիայի հիմնարար դրույթներից մեկը էկոնոմիկայի սոցիալական վերակողմնորոշման միտումն էր, նրա շրջադարձը դեպի մարդը:

Ի՞նչ է այստեղ արված: Նախ և առաջ շտկումներ են մտցվել կառուցվածքային քաղաքականության մեջ: Դա հանգեցրել է այն բանին, որ ընթացիկ հնգամյակում ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի աճի տեմպերը ավելի արագ են, քան արտադրության միջոցներ թողարկող ճյուղերում: Եթե օգտագործելու լինենք մեր հանրահայտ տերմինաբանությունը՝ առաջին անգամ «Բ» խումբը ավելի դինամիկ է զարգանում «Ա» խմբի համեմատությամբ: Սկսվել է կապիտալի վերահոսքը դեպի անմիջականորեն մարդուն առնչվող ոլորտ, դեպի մարդու օգտին աշխատող ճյուղեր: Մեր հսկայական էկոնոմիկայի համար այդ միտումը ծայրաստիճան կարևոր է, և մենք պետք է ամեն ինչ անենք, որպեսզի ոչ միայն ամրապնդենք, այլև էլ ավելի զարգացնենք այն:

Արդեն հնգամյակի կատարման ընթացքում լրացուցիչ քայլեր էին ձեռնարկվում հաղթահարելու սոցիալական ոլորտի ֆինանսավորման մնացորդային սկզբունքը:

Չորս տարվա ընթացքում ոչարտադրական շինարարությանը, հնգամյա պլանի առաջադրանքներից բացի, հատկացվել է 34 միլիարդ ռուբլի:

Ամբողջությամբ վերցված այդ նպատակների համար ծախսվել է ավելի քան 246 միլիարդ ռուբլի, իսկ ոչարտադրական երկարատև կապիտալ ներդրումների աճի տարեկան միջին տեմպը գրեթե կրկնապատկվել է՝ տասնմեկերորդ հնգամյակի 4,7 տոկոսից ընթացիկ հնգամյակում հասնելով 8,8 տոկոսի:

Սա բավականին լուրջ տեղաշարժ է: Այն թույլ կտա հինգ տարում շահագործման հանձնել 100 միլիոն քառակուսի մետրով ավելի բնակելի մակերես, քան նախորդ հնգամյակում: Մենք առաջին անգամ ենք հասնում բնակարանային շինարարության այսպիսի մասշտաբների: Ավելացել է նաև մյուս սոցիալ-մշակութային օբյեկտների գործարկումը: Այդ տարիներին նախորդ հնգամյակի համեմատությամբ, ըստ տեղերի թվի, ավելի են գործարկվել դպրոցներ՝ միջին հաշվով 38 տոկոսով, մանկական հիմնարկներ՝ 10 տոկոսով, հիվանդանոցներ՝ 15 տոկոսով, պոլիկլինիկաներ՝ 38 տոկոսով, ակումբներ և մշակույթի տներ՝ 51 տոկոսով, առևտրի ձեռնարկություններ՝ 7 տոկոսով:

Հատկապես կառանձնացնեմ բնակչությանն ապրանքներով ապահովելու հարցը:

Այստեղ վիճակը անչափ ծանր է: Ես կարող էի միանալ այն ամենին, ինչ ասվում է այդ առթիվ, և, հավանաբար, դեռ ասվելու է այս օրերին, համերաշխվել ամենասուր քննադատության հետ: Բայց եթե միայն բորբոքենք կրքերը, դրանից ապրանք չի ավելանա: Հարկավոր են սթափ գնահատականներ, մտածված հետևություններ, գործնական քայլեր: Մեզանից, որքանով հասկանում եմ, հենց սա են ակնկալում խորհրդային մարդիկ:

Իրականում ի՞նչ է տեղի ունենում այստեղ: Եթե վերցնենք վիճակագրությունը, ընդ որում նույնիսկ համեմատենք ոչ թե արժեքային, այլ բնամթերային ցուցանիշները, ապա որոշակի դրական դինամիկա է նկատվում պարենի և ժողովրդական սպառման ապրանքների շատ տեսակների գծով: Օրինակ, նախորդ հնգամյակի համեմատությամբ տարեկան միջին հաշվով 26,6 միլիոն տոննայով ավելի ենք հացահատիկ ստացել: Սա էական աճ է: Աճել է նաև մսի արտադրությունը սպանդային քաշով՝ 2,5 միլիոն տոննայով, ինչպես նաև կաթինը, շաքարի ճակնդեղինը, արևածաղկինը, բայց ցուցանիշներն այստեղ զգալիորեն ցածր են: Աճել է բնական գործվածքների, տրիկոտաժեղենի, գունավոր հեռուստացույցների, մագնիտաֆոնների, սառնարանների, լվացքի մեքենաների, կենցաղային այլ տեխնիկայի արտադրությունը: Սկսում է առաջին արդյունքները տալ պաշտպանական ճյուղերի փոխարկը. ընթացիկ տարվա հունվար-մայիսին այդ ճյուղի ձեռնարկություններում ժողովրդական սպառման ապրանքների թողարկումն ավելացել է 22 տոկոսով:

Եթե անցյալում ապրանքաշրջանառության տարեկան միջին աճը կազմում էր 10—12 միլիարդ ռուբլի, ապա ընթացիկ հնգամյակում՝ 20 միլիարդ ռուբլի, իսկ անցյալ տարի՝ 38 միլիարդ ռուբլի: Մեկ հոգուն հասնող սպառումն ավելացել է:

Այդ ամենն այդպես է: Եվ միևնույն ժամանակ սպառողական շուկայում իրավիճակը ոչ միայն չի թեթևացել, այլև շատ դեպքերում սրվել է, պարզապես անհանդուրժելի բնույթ է ընդունել: Ես նույնիսկ կասեի, որ դա երկրի սոցիալ-տնտեսական դրության ճգնաժամային կետն է:

Դա նախ և առաջ տեղի ունեցավ այն պատճառով, որ դրամական եկամուտները շատ ավելի արագ էին աճում, քան ապրանքների արտադրությունը: Ի՞նչն է պատճառը:

Նախ, ձեռնարկությունների տնտեսական իրավունքներն ու ինքնուրույնությունն ընդլայնվելիս վերացվեց խստիվ վերահսկողությունը աշխատանքի արտադրողականության և աշխատավարձի աճի հարաբերակցության նկատմամբ: Շատ ձեռնարկություններում այն էապես առաջ անցավ արտադրանքի արտադրության աճից: Երկրորդ, բնավ էլ ամեն ինչ չէր խորապես մտածվել կոոպերատիվ շարժումը ծավալելիս: Այն օգտակար գործերի հետ մեկտեղ, որ արել և անում են կոոպերատորները, գոյացել է անկանխիկ փողերը կանխիկի վերածելու ուղի: Ընդ որում այստեղ խոսքը վերաբերում է միլիարդավոր ռուբլիների: Երրորդ, կապիտալ շինարարության մեջ իրավիճակը փոխելու, կարգուկանոն հաստատելու նպատակով ընդունված որոշումները չկատարվեցին: Շարունակվում է հարակառույցի պրակտիկան, որը հանգեցնում է նյութական ռեսուրսների սառեցմանը, փոխանակ այն բանի, որ դրանք փոխադրվեն շուկա: Այստեղ ավելացրեք անավարտ օբյեկտների շինարարների աշխատավարձը: Սրանք նույնպես միլիարդավոր ռուբլիներ են:

Դրամական եկամուտների աճի վրա, բնականաբար, անդրադարձավ նաև ուսուցիչների, բժիշկների և աշխատավորության այլ կատեգորիաների աշխատավարձի, կենսաթոշակների ու կրթաթոշակների բարձրացման մասին ընդունված որոշումների իրացումը: Այս ամենի հետևանքով միայն անցյալ տարի բնակչության դրամական եկամուտների աճը հասավ 64 միլիարդ ռուբլու, նախորդ տարիների սովորական 12—15 միլիարդ ռուբլու դեպքում: Նույնպիսի իրավիճակ է պահպանվում ընթացիկ տարում:

Բնականաբար, հարց է ծագում. արդյոք հնարավո՞ր էր խուսափել աշխատանքային վրիպումներից, բացասական միտումներ թույլ չտալ էկոնոմիկայի ասպարեզում: Համենայն դեպս պետք է ուղղակի ասել, որ այդ հետևանքները կարող էին զգալիորեն ավելի նվազ լինել, եթե կառավարությունը կոմպլեքսային մոտեցում ապահովեր տնտեսական ռեֆորմի անցկացման նկատմամբ, կարողանար դիմակայել ճյուղերի, կառավարման հին կառուցվածքների ճնշմանը, որոնք ձգտում են պահպանել իրենց դիրքերը, աշխատանքի վարչահրամայական եղանակները: Հենց այստեղ էլ հարկավոր էր, որ կառավարությունը օգնություն ստանար քաղբյուրոյի կողմից, ավելի մեծ պահանջներ ներկայացվեին նրան և աջակցություն ցույց տրվեր:



Եվ պետք է ասել, նման ահազանգեր գալիս էին հասարակությունից, տնտեսագիտական ծառայություններից, մասնավորապես Կենտկոմի տնտեսագիտական բաժնից: Բայց դա, ցավոք, տեղի չունեցավ, թեպետև մեկ անգամ չէ, որ վիճաբանություններ էին տեղի ունեցել, այդուհանդերձ չարվեց այն ամենը, ինչ որ պետք է արվեր: Ուստի մենք անմիջական պատասխանատվություն ենք կրում սպառողական շուկայում իրադրությունը սրվելու համար, որը բարդացրեց երկրի ամբողջ կացությունը:

Սա լուրջ դաս է մեր աշխատանքի համար: Այստեղից էլ հենց բխում է տնտեսական ռեֆորմն արագացնելու և արմատականացնելու հրամայական անհրաժեշտությունը: Չի կարելի այսուհետև էլ ապրել տնտեսավարման այնպիսի համակարգով, որը հետ է մղում գիտատեխնիկական առաջընթացը, նոր տեխնոլոգիաները քարոզում ծախսողական սկզբունք, հարուցում վատնողություն, կորուստներ:

Երկրում առաջվա նման արտադրանքի մեկ միավորի վրա 2—2,5 անգամ ավելի, իսկ վառելանյութի և էներգիայի վրա՝ 1,5 անգամ ավելի նյութական ռեսուրսներ են ծախսվում, քան զարգացած երկրներում: Հսկայական քանակությամբ ձեռնարկություններ անշահութաբեր են աշխատում, պետության կողմից դոտացիաները կազմում են 23 միլիարդ ռուբլի: Ես արդեն չեմ խոսում հացահատիկի, ցեմենտի, մետաղի, նավթի, հանքային պարարտանյութերի, բնափայտի և շատ այլ ռեսուրսների վիթխարի կորուստների մասին: Տնտեսավարման նման համակարգի դեպքում պետությունը չի կարող հարուստ լինել, իսկ ժողովուրդը՝ ունևոր: Այսուհետև բանն այսպես շարունակել չենք կարող, համակարգը պետք է փոխել, որպեսզի ոչ թե հեռավոր հեռանկարի առումով, այլ արդեն ամենամոտ ժամանակներս ապահովենք ժողովրդի կենսապայմանների զգալի բարելավում:

Այսպիսով, վերակառուցման բուն տրամաբանությունը, երկրի սոցիալ-տնտեսական կացության սրությունը մեզ ընդհուպ մոտեցրել են տնտեսական համակարգում հիմնարար փոփոխություններ իրականացնելու անհրաժեշտությանը: Խոսքը տնտեսության նոր՝ բազմակացութաձև, սեփականության ու տնտեսավարման բազմազան ձևերով, ժամանակակից շուկայական ենթակառուցվածքով մոդելի ձևավորման մասին է: Դրանով իսկ ասպարեզ կբացվի մարդկանց գործարար ակտիվության և նախաձեռնության համար, կստեղծվեն արգասավոր աշխատանքի, էկոնոմիկայի արդյունավետության աճի նոր, ուժեղ դրդապատճառներ:

Այս խնդիրը մենք առաջ էինք քաշել դեռևս վերակառուցման սկզբնական փուլում: Բայց միայն այժմ, երբ տնտեսավարման նոր ձևերի օգտագործմամբ աշխատանքի որոշակի փորձ է կուտակվել, խոշոր քայլեր են կատարվել քաղաքական ռեֆորմի բնագավառում, ընդունվել են մի շարք կարևորագույն օրենքներ, նախ և առաջ սեփականության, վարձակալության, հողի մասին և այլն, մենք կարող ենք գործնականորեն ձեռնամուխ լինել շուկային անցնելու խնդրի իրականացմանը:

Իհարկե, դեռևս շատ բան պետք է անել դրա համար, նման աշխատանք ներկայումս տարվում է: Կպահանջվեն անհետաձգելի միջոցառումներ սպառողական շուկան կարգավորելու ոլորտում, դրամական զանգվածի ավելցուկները կապելու, պետական բյուջեն կազդուրելու ուղղությամբ և շատ այլ բան:

Մեր առջև որպես գործնական խնդիր կանգնած է ներկա տնտեսական տարվա հաջող եզրափակումը: Աշխատավորական կոլեկտիվները նախաձեռնություն և ձեռներեցություն դրսևորելով պետք է ամեն ինչ անեն, որ ընթացիկ տարվա տնտեսական արդյունքները դրականորեն ազդեն երկրի սոցիալ-տնտեսական վիճակի վրա:

Բայց ի՞նչն է անհանգստացնում մարդկանց, երբ նրանք քննարկում են շուկայական տնտեսությանն անցնելու ուղիների հարցը. այն, թե դա արդյոք չի՞ հանգեցնի կենսամակարդակի իջեցման, հասարակության մեջ սոցիալական շերտավորման, արդյոք կպահպանվե՞ն սոցիալական արդարությունն ու մարդկանց պաշտպանվածությունը:

Այս հարցերը իրենց տալիս են կոմունիստները, դրանք հուզում են բոլորին՝ աշխատողներին ու թոշակառուներին, տղամարդկանց և կանանց, վետերաններին ու երիտասարդներին: Հենց այն պատճառով, որ դրանք պատշաճ կերպով չէին խորամշակվել կառավարական ծրագիրը նախապատրաստելիս, այն արժանացավ խիստ քննադատական վերաբերմունքի: Այստեղ պետք է լիակատար պարզություն լինի:

Նախ և առաջ՝ բուն շուկայի մասին: Նա հազարամյա էվոլյուցիա է ապրել՝

թենական դաշնագրում: Մյուս խնդիրը մտավոր և նյութական ռեսուրսների միավորումն է, այդ թվում միջազգային մակարդակով, երկրի էկոլոգիական փրկության համար: Այս ամենը պետք է դառնա էկոլոգիայի գծով մշակվող ազգային ծրագրի օրգանական մասը:

Խորհրդային էկոնոմիկայի առողջացումը զգալի չափով կախված է այն բանից, թե ինչպես կընթանա դրա ընդգրկումը աշխատանքի միջազգային բաժանման համակարգի մեջ: Պետք է ասել, որ այստեղ ակտիվությունը մեծ է, և որքան շատ ազատություն է տրվում ձեռնարկություններին, ռեգիոններին, հանրապետություններին (իսկ այդ ուղին մենք ճիշտ ենք համարում), այնքան շատ են նման ակտիվությունը, նոր գաղափարները: Բայց եկեք ուշադիր լինենք, քանի որ դա դյուրին հարց չէ: Հանպատրաստից մղումներն արդեն հանգեցրել են մեծ կորուստների: Հարկ կլինի ջատ բան անել մեր էկոնոմիկան արդիականացնելու, նոր տեխնոլոգիաներ յուրացնելու, աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, մրցունակ արտադրանքի թողարկումն ապահովելու համար: Բայց, թերևս, ամենագլխավորն է դեպի ռուբլու փոխարկելիություն գնալը: Մինչև վերջերս այդ մասին խոսվում էր որպես հեռավոր ապագայի գործի մասին: Մինչդեռ այս խնդրի լուծումը չի կարելի հետաձգել: Հարկավոր են արտահանման հուժկու խթաններ, խոչընդոտներ անարդյունավետ ներմուծման, արտաքին պարտքի մեծացման ճանապարհին: Հարկավոր է փոխշահավետ պայմաններ ստեղծել օտարերկրյա կապիտալի ներգրավման համար:

Շուկային անցնելուն և աշխարհատնտեսական կապերին միանալուն առնչվող խնդիրները մեծ պահանջներ են ներկայացնում մեր արտաքին տնտեսական գործունեությանը: Պետք է ասել, որ մենք վերջին ժամանակներս այդ հարցերով շատ ենք զբաղվել, ձևակերպել ենք համապատասխան քաղաքական հիմնադրույթներ, այդ ոլորտում էական փոփոխություններ ենք մտցրել կառավարության գծով: Բայց արտաքին տնտեսական գերատեսչությունների ու ձեռնարկությունների, իրավունքներ ստացած միավորումների աշխատանքում լուրջ վրիպումները վերջին ժամանակներս շատ են:

Իհարկե, ընդհանուր իրավիճակի վրա անդրադարձել է հումքային ապրանքների, նախ և առաջ նավթի համաշխարհային գների կտրուկ նվազումը: Դրա հետևանքով մեր եկամուտները փոխարկելի վալյուտայով գրեթե կիսով չափ կրճատվել են: Այս պայմաններում հարկավոր էր խոշոր մանևր իրականացնել թե արտահանության և թե ներմուծման բնագավառում: Բայց դա անհետևանք չանցավ, և մենք բոլորս դա զգացինք: Ինչ վերաբերում է մեքենաշինության արդիականացմանը, հարկ եղավ չեղյալ հայտարարել սարքավորումների շատ տեսակների գնման պայմանագրերը: Դա անդրադարձավ նաև սպառողական շուկայի վրա, քանի որ անցյալում մենք փոխարկելի վալյուտայի զգալի մասն օգտագործում էինք մեր շուկան ապրանքներով հագեցնելու համար:

Ներկայումս կառավարությունը առաջարկություններ է նախապատրաստում արտաքին տնտեսական գործունեությանն առնչվող պրոբլեմների ամբողջ համալիրի վերաբերյալ: Խոսքը կապիտալիստական երկրների հետ կապերն ընդլայնելու մասին է, ՏՓԽ-ի շրջանակներում վալյուտայով հաշվարկված համաշխարհային գներին անցնելու մասին: Դա վերաբերում է նաև «երրորդ աշխարհի» երկրների հետ մեր համագործակցության վերաիմաստավորմանը և այնտեղ որոշակի ճշգրտումներ կատարելուն: Այդ ամենն այդպես է, և իրավիճակը կփոխվի: Բայց համաշխարհային շուկա դուրս գալը, աշխարհատնտեսական կապերին ԽՍՀՄ-ի միանալը պահանջում են թե մտածողության և թե մեր կադրերի մոտեցումների արմատական փոփոխություն, խոր գիտելիքներ, լայն աշխարհայացք, գործը նորովի վարելու հմտություն: Մեզ մոտ առայժմ ամեն ինչ հանգեցվում է մի բանի. մեզ տվեք վալյուտային ռեսուրսների 3—5, 10 տոկոսը, որպեսզի մենք կարողանանք դրանք վաճառել շուկայում և մեզ համար գնել, ինչ որ ուզում ենք: Առաջին հայացքից ամեն ինչ պարզ ու բնական է թվում: Սկզբնական փուլում դրան կարելի է դիմել, և մենք ինչ-որ բանի դիմեցինք: Բայց եթե մենք արտաքին տնտեսական գործունեության վերակառուցման ամբողջ իմաստը տեսնում ենք սրանում, ապա առհասարակ ոչինչ չենք հասկանում: Հարկավոր են կադրերի վերապատրաստում, նրանց մտածողության վերակառուցում, գործը նորովի վարելու հմտություն: Մեզ մոտ սրան առայժմ ակընհայտորեն անբավարար ուշադրություն է դարձվում, որը կասեցնում է արտաքին տնտեսական գործունեության վերակառուցումը և շատ դեպքերում, ինչպես ասացի, արդեն հանգեցրել է ուղղակի կորուստների:



Եվս մի բան. եթե մեր ձեռնարկությունները առաջվա պես վերաբերվեն այն ամենի օգտագործմանը, ինչը ներմուծմամբ ձեռք է բերվում էկոնոմիկայի արդիականացման համար, եթե այդքան դժվարությամբ վալյուտայով գնվածը տարիներով մնա, փչանա և հնանա շուկայի համար գործելու փոխարեն, ապա դժվար կլինի բարեփոխումների և այն օգուտի հույսն ունենալ, որ խոստանում է տալ միջազգային համագործակցությունը էկոնոմիկայի ոլորտում:

Մի խոսքով, այստեղ պահանջվում են թե արագ, վճռական միջոցառումներ և թե շատ մտածված, կշռադատված, պատասխանատու մոտեցում:

Ընկերներ: XXVII համագումարում ներկայացված հաշվետու զեկուցման մեջ և Կենտկոմի մարտյան պլենումում աննախադեպ սրությամբ դրվեց ագրարային պրոբլեմը: Դրվեց գյուղի ամբողջ ճակատագրի, գյուղացիության ճակատագրի տեսանկյունից: Այստեղ է նաև պարենային հարցի լուծման բանալին:

Տեխնիկական և տեխնոլոգիական կարգի ոչ մի առանձին միջոցառում ինքնըստինքյան չկարողացավ մեզ տալ այդ լուծումը: Սա հիմա ակնհայտ փաստ է: Կուսակցության սկզբունքային նոր դիրքեր դուրս գալը եղավ գյուղացիական հարցի և ագրարային հարաբերությունների պատմության անզիջում վերլուծության արդյունքը՝ սկսած կոլեկտիվացումից մինչև մեր օրերը: Այդ վերլուծությունը հանգեցրեց այն հետևությանը, որ պետք է խոսվի ոչ միայն անմիջականորեն ագրարային ոլորտի, այլև գյուղացու հանդեպ, ամբողջությամբ վերցրած գյուղի հանդեպ եղած վերաբերմունքի, բանվոր դասակարգի և գյուղացիության, քաղաքի և գյուղի փոխհարաբերությունների փոփոխությունների մասին: Ըստ էության մենք վերադարձել ենք ագրարային հարցի հիմնային, լենինյան ըմբռնմանը և այստեղից էլ ենք նոր մոտեցումների հանգել գյուղի սոցիալական զարգացման, էկոնոմիկայի հիմնական հատվածների համարժեք փոխանակության, գյուղում սեփականության բուն հարաբերությունների արմատական վերափոխումների անհրաժեշտության ըմբռնման նկատմամբ:

Այսօր, ընկերներ, իրավիճակը անաչառ գնահատելով, պետք է խոստովանել. այդ սկզբունքային լուծումներին համապատասխան պրակտիկ գործունեություն չհաջորդեց ոչ կառավարական մակարդակով, ոչ էլ հանրապետական և տեղական մարմինների մակարդակով: Ես հասկանում եմ, թե ինչու այսօր այդքան քննադատաբար, այդքան խիստ և կտրականորեն են տրամադրված գյուղատնտեսության, ամբողջ ագրարային հատվածի աշխատողները: Գյուղը իրոք լուրջ միջոցառումների է կարոտ թե սոցիալական բարելավման և թե նյութատեխնիկական բազայի ամրապնդման գծով: Համագումարում պետք է դիրքորոշում մշակել այս առումով: Մենք պետք է ընդունենք գյուղին, ամբողջ ագրարային հատվածին ֆինանսական, նյութական հզոր աջակցություն ցույց տալու անհրաժեշտության վերաբերյալ տարբեր հասարակական համաժողովներում գյուղացիների կողմից հարցի առաջադրման արդարացիությունը:

Դա ինչպե՞ս անել: Մեզ մոտ սովորել են այսպես մոտենալ. տուր, վերաբաշխիր, բյուջեից հատկացրու: Նման վարչաբաշխական մեթոդը արդեն անընդունելի է: Գյուղի վերածնման պրոբլեմը պետք է լուծել տնտեսագիտական մեթոդներով՝ քաղաքի և գյուղի համարժեք փոխանակման հաստատմամբ, գյուղի, ամբողջ ագրոարդյունաբերական համալիրի օգտին տնտեսական ու սոցիալական գերակայությունների ստեղծմամբ, գյուղտեխնիկա արտադրող արդյունաբերության մենատիրության վերացմամբ, տնտեսավարման բազմապիսի ձևերի կարիքներին համապատասխանող մեքենաների համակարգի ստեղծմամբ:

Պետք է ընդունվեն անհրաժեշտ օրենսդրական ակտեր և կառավարության որոշումներ, որոնց իրագործումը կապահովեր կապիտալի էական փոխանցումը գյուղի զարգացման համար: Առաջարկում եմ օրենսդրական նախաձեռնության կարգով այս հարցն առաջադրել ԽՍՀՄ Գերագույն խորհրդին: Հասարակությունը պետք է օգնության հասնի գյուղին: Կարծում եմ, մենք պետք է ամբողջ կուսակցության անունից մեր դիրքորոշումը հստակորեն հայտարարենք ամբողջ երկրի առջև: Դրա հետ մեկտեղ ուզում եմ ընդգծել. ժողովրդական տնտեսության թերևս ոչ մի ճյուղ այնքան սրությամբ չի զգում տնտեսական ազատության, իսկական շուկայական միջավայրի կարիքը, որքան մեր գյուղը, ագրարային հատվածը: Եվ պետք է այնպես անել, որ այդ ազատությունը տրվի: Կենտկոմի մարտյան պլենումը որպես վճռական խնդիր առաջադրեց գյուղում արտադրական հարաբերությունների արմատական վերակառուցումը, առանց որի չի կարող լինել տնտեսական ազատություն: Այսօր կրկին ու կրկին պետք է հայտարարել. եթե չփոխվեն տնտեսական հարաբերություն-

ները, չհաստատվեն գյուղացու աշխատանքի նոր խթաններ, չփոխվի գյուղացու բուն վիճակը, եթե նա չդառնա հողի իսկական տերը, ապա չի օգնի ոչ մի ինվեստիցիա: Մենք պետք է համագումարում հավաստենք մեր հավատարմությունը Կենտկոմի մարտյան պլենումի կուրսին:

Այս կապակցությամբ կխոսեմ մի հարցի մասին, որի շուրջը տեղի են ունենում ոչ միայն բանավեճեր, այլև, ըստ իս, արդեն իսկական չարարկումներ: Դա վերաբերմունքն է կոլտնտեսությունների և խորհտնտեսությունների նկատմամբ: Բանը հասնում է մինչև այն պնդմանը, թե նոր ագրարային քաղաքականությունը իբր կասկածի տակ է առնում դրանց բուն գոյությունը: Բայց դրա իմաստն այն է, որ հավասար հնարավորություններ հաստատվեն հողի վրա տնտեսավարելու բոլոր ձևերի համար: Թող դրանցից յուրաքանչյուրն ապացուցի իր կենսունակությունն ու արդյունավետությունը՝ սա է մեր սկզբունքային դիրքորոշումը: Եվ մենք, իհարկե, մերժում ենք «համատարած ապակոլեկտիվացման» պահանջը:

Համոզված եմ, որ այն կոլտնտեսություններն ու խորհտնտեսությունները, որոնք հմտորեն տնտեսավարում են, սոցիալական առումով բարելավում, ապահովում գյուղացիների արժանավայել կենսապայմանները, արտադրում հասարակության համար անհրաժեշտ շատ արտադրանք, արժանի են ամենայն աջակցության: Բնականաբար, դրանք կկազմեն նորացվող խորհրդային գյուղի օրգանական մասը:

Իսկ այն կոլտնտեսություններն ու խորհտնտեսությունները, որոնք տասնամյակներ շարունակ գործում են անփութաջան կերպով, վնասով են աշխատում, գոյատևում լրավճարներով, իսկ դրանց կառավարչական ապարատը այդուհանդերձ խոչընդոտում է սեփականության հարաբերությունների բարեփոխմանը, տնտեսավարման նոր ձևերի յուրացմանը, պետք է բոլորն էլ արմատապես վերափոխվեն:

Եվս մեկ հրատապ հարց՝ հողի ռեֆորմի մասին: Ուղղակի կասեմ. հողի մասին օրենքը առայժմ չի գործում: Եվ դա դեմ է առնում ոչ միայն ստեղծված կառավարչական կառուցվածքներին, վարչատնտեսական ապարատի դիրքորոշմանը, այլև նախկին հոգեբանությանը, քարացած դրոշմակերպին, որոնք գոյացել էին գյուղացիաթափման, աշխատողին հողից և արտադրության միջոցներից կտրելու հետևանքով, վերջնական արդյունքներից անկախ աշխատանքի երաշխավորված վարձատրության պայմաններում:

Գոյություն ունի վճռական միջոցների ձեռնարկման սուր անհրաժեշտություն: Իհարկե, ոչ ոք չի առաջարկում «համատարած վարձակալում», «համատարած կոլեկտիվացման» օրինակով: Հուսով եմ, դեռ ոչ ոք չի մտածել վարձակալական կոլեկտիվների ստեղծման առաջադրանքներ տալ: Դա կլիներ այն մեծագույն անհեթեթության կրկնությունը, որը պատճառ դարձավ վիթխարի կորուստների և աղետների, որոնցից մենք մինչև օրս չենք կարողանում գլուխ հանել: Վճռական հարցը հողի մասին օրենքի իրագործման մեխանիզմի ստեղծումն է: Ի դեպ, այս հարցը սրությամբ են դնում գյուղատնտեսության աշխատողները, առաջին հերթին վարձակալները և վարձակալ դառնալ ցանկացողները, բազմաթիվ ղեկավարներ և մասնագետներ: Հարկավոր է վերացնել ամեն տեսակ խոչընդոտները բոլոր նրանց ճանապարհին, ովքեր կուզենային ազատորեն զբաղվել գյուղացու գործով: Հողի մասին օրենքը պետք է անշեղորեն կատարվի, և այս առումով պետք է նախ և առաջ օգտագործվեն խորհուրդների նոր լիազորությունները: Սա նրանց անմիջական պարտականությունն է:

Ուզում եմ հաղորդել, որ հողային ռեֆորմի ընթացքի հարցը նախապատրաստվում է պրեզիդենտական խորհրդի առաջիկա նիստերից մեկում քննարկելու համար:

Ընկերներ, հաշվետու ժամանակաշրջանում, մանավանդ վերջին ժամանակներս, սրվել են ազգամիջյան հարաբերությունները: Մենք միանգամից չէ, որ գիտակցեցինք այդ պրոբլեմի նշանակությունը, ժամանակին չտեսանք դրա մեջ թաքնված վտանգները: Դուք երևի հիշում եք, որ ԽՄԿԿ XXVII համագումարում, որի որոշումների կատարման համար մենք հաշվետվություն ենք տալիս, այդ հարցերը քննարկվում էին այնպես, կարծես թե դրանք վաղուց լուծված են, և բանը կարծես թե ընդհանուր առմամբ նորմալ է: Բայց կյանքը, ինչպես ասում են, դաժան դաս տվեց մեզ: Պարզվեց, որ մենք պատրաստ չենք այն բանին, ինչ տեղի ունեցավ, երբ պայթեցին ու ջրի երես ելան կարծեցյալ բարեհաջողության գրվանի տակ երկար ժամանակ կուտակված շատ լուրջ պրոբլեմները:

Այստեղ շատ բան է միահյուսվել, և ես գործը պարզունակ չէի դարձնի: Վերակառուցումը և հրապարակայնությունը բարենպաստ պայմաններ ստեղծեցին ազգային ինքնագիտակցության վերածնման համար: Դա դրական պրոցես է, որը կարելի



է միայն ողջունել: Դրա հետ մեկտեղ բացահայտվեցին այն պրոբլեմներն ու հակասությունները, որ ծնունդ են առել արտադրողական ուժերի տեղաբաշխման, մշակութային և ազգային քաղաքականության բնագավառում, այն բանում թույլ տրված սխալների պատճառով, ինչ վերաբերում է ազգային լեզուների զարգացմանը, երկրի մի շարք ռեգիոններում սոցիալական հարցերի լուծմանը, նրանց զարգացման անհամաչափությանը, ժողովրդագրական և էկոլոգիական փոփոխություններին:

Դրանք իրենց պատմական, կրոնական պատճառներն ունեին: Եվ, իհարկե, հիմա հարկ է լինում հատուցել ժամանակին ամբողջ ժողովուրդների նկատմամբ թույլ տրված հանցագործությունների համար:

Պետք է անկեղծորեն խոստովանել. իշխանության կենտրոնական և տեղական մարմինները սկզբնական շրջանում ոչ միատեսակ, առանց հարկ եղած ուշադրության վերաբերվեցին այդ պրոբլեմներին: Դրանից օգտվեցին ամեն կարգի դեստրուկտիվ ուժերը՝ անջատականները, մոլի ազգայնականները, կաշառասուն տարրերը: Ազգային հարցը և ազգամիջյան հարաբերությունները մի շարք դեպքերում սուր ձևեր ընդունեցին: Էթնիկական հողի վրա տեղի ունեցան արյունալի ընդհարումներ, կան մարդկային շատ զոհեր: Երևան եկան փախստականներ, հազարավոր մարդիկ ստիպված եղան լքել իրենց բնակավայրերը, թափառում են, ծանր զրկանքներ կրում: Այս ամենը անհանդուրժելի է, ամբողջ երկրում մարդիկ մեծ տագնապով են համակվում:

Իշխանությունների հասցեով ստացվում են մեր բազմազգ պետության մեջ հաշտության ու համաձայնության վերահաստատման միջոցներ ձեռնարկելու հիմնավոր պահանջներ: Ցավոք, պետք է ընդունել, որ այդ պայմաններում ոչ բոլորը դիմացան ինտերնացիոնալիզմի փորձությանը: Ոչ քիչ կոմունիստներ ենթարկվեցին ճնշման, չկարողացան իրենց ժողովրդին, աշխատավորներին ներկայացնել այնպիսի փաստարկներ, որոնք համոզեին անջատականների և ազգային երկպառակության սադրիչների կոչերին հետևելու վտանգավորությանը: Իսկ նման փաստարկները ավելի քան բավարար են:

Եվ ես կարծում եմ, որ կուսակցական մարմիններին ճիշտ քննադատեցին քաղաքական աշխատանքում թույլ տրված վրիպումների համար, ազգամիջյան հարաբերությունների սրման պայմաններում այդ աշխատանքը տանելու անզորության համար: Մենք այստեղ շատ բան ենք տանուլ տվել:

Դրանից արվեցին անհրաժեշտ հետևություններ, մշակվեց, համաժողովրդական քննարկման դրվեց, իսկ հետո անցած տարվա սեպտեմբերյան պլենումում հավանության արժանացավ կուսակցության ազգային քաղաքականության պլատֆորմը: Դրա գլխավոր իմաստը այն բանի ընդունումն է, որ անհրաժեշտ է ազգային վերածնության պրոցեսները ուղղել ստեղծարար հուն՝ ի շահ յուրաքանչյուր ժողովրդի և ամբողջ երկրի: Չի կարելի ազգային հարցը լուծել առանց վերակառուցման շարունակման ու խորացման, և վերակառուցումն էլ իր հերթին չի կարող հաջողության հույս ունենալ, եթե չլուծվեն երկրի ժողովուրդների փոխհարաբերությունների ներդաշնակեցման հարցերը:

Ինձ թվում է, հիմա մենք ավելի լավ ենք հասկանում, քան երբևիցե, Միության՝ որպես ընդհանուր տնտեսական, քաղաքական շահերով, հենց պատմությամբ շաղկապված ժողովուրդների կամավոր միավորման, բնույթի ու դիմագծի վերաբերյալ լենինյան հայացքների էությունը: Այն ամենը, ինչ ապրեցինք ու իմաստավորեցինք վերջին ժամանակներս, այն ըմբռնմանը հանգեցրեց, որ Միության վերափոխումը չի կարող սահմանափակվել սոսկ հանրապետությունների և ինքնավար կազմավորումների իրավունքների ընդլայնումով, թող որ նույնիսկ զգալի ընդլայնումով: Անհրաժեշտ է սուվերեն պետությունների իսկական միություն:

Խոսքն ըստ էության վերաբերում է մեր երկրի այնպիսի ազգային-պետական կառուցվածքի հաստատմանը, որը հնարավորություն տար հանգուցալուծել հակասությունները, ժողովուրդների համագործակցությունը հասցնել նոր մակարդակի, բազմապատկել ընդհանուր միութենական քաղաքական հզորությունը, տնտեսական ու հոգևոր պոտենցիալը՝ ի շահ բոլորի, ովքեր միավորվել են պետությունների մեծ միության մեջ: Դրանով իսկ հուսալիորեն կապահովվի երկրի անվտանգությունը, կմեծանա նրա միջազգային հեղինակությունը:

Ընդ որում մնում է ազգային սուվերենության և ինքնավարության ցանկացած շահերի նկատմամբ մարդու իրավունքների առաջնայնության պահանջը: Այն պետք է վավերացվի Միության և յուրաքանչյուր հանրապետության սահմանադրական կա-

ռուցվածքի մեջ: Այդ սկզբունքից, որով մենք ղեկավարվում ենք նաև միջազգային ասպարեզում, չի կարելի նահանջել ոչ մի քայլ:

Ֆեդերացիայի խորհրդի ստեղծած հատուկ հանձնաժողովի շրջանակներում արդեն աշխատանք է տարվում նոր միութենական դաշնագրի նախապատրաստման համար, որը կներառի մեր բազմազգ պետության հիմնարար վերափոխման հարցերի ամբողջ կոմպլեքսը: Բայց եթե դա այդպես է, և մենք փաստորեն գործում ենք հարկավոր ուղղությամբ, եթե մոտ ապագայում արմատական բարեշրջման հույս ունենք, ապա երևի օրինաչափ կլինի համագումարի անունից դիմել երկրի բոլոր ժողովուրդներին՝ կոչ անելով գիտակցել ազգամիջյան հարաբերություններում կրքերի հետագա բորբոքման կործանարարությունը, կանգնեցնել սադրիչներին ու ճակատամարտ տալ նրանց, պատվի ու արժանապատվության պաշտպանության ինչ զգեստով էլ որ նրանք պճնվելիս լինեն: Ըստ իս, այդ հարցի առթիվ նման դիրքորոշում է մեզանից ակնկալում ժողովուրդը:

Այժմ երբ մենք թևակոխում ենք մեր բազմազգ պետության մեջ խոր փոփոխությունների ժամանակաշրջանը, բոլոր ժողովուրդներին հարկավոր են անդորր, հաշտություն ու համագործակցություն: Հուսով եմ, համագումարի այդ կոչին կանսան մեր մեծ, բազմազգ երկրի բոլոր անկյուններում:

Ընկերներ, մեծ, սկզբունքային կարևորության աշխատանք է կատարված քաղաքական ռեֆորմի ուղղությամբ: Դրա իրականացման անհրաժեշտությունը մենք գիտակցեցինք ծավալված վերակառուցողական պրոցեսների ընթացքում, երբ սկսված տնտեսական վերափոխումները հապաղեցին, հակասության մեջ մտնելով նախկին քաղաքական համակարգի հետ: Կենտկոմը դրան վերաբերվեց ամենայն լրջությամբ և սկսեց զբաղվել ծագած պրոբլեմների ամբողջ կոմպլեքսի հիմնավոր մշակմամբ: Այստեղ ես կուզենայի ասել ԽՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումի հսկայական նշանակության մասին: Այնտեղ առաջին անգամ տրվեց մեր քաղաքական վարչակարգի գործառության, դրա մեջ կուսակցության և խորհուրդների ունեցած տեղի ազնիվ վերլուծությունը: Հենց այն ժամանակ մենք ամբողջ ձայնով ասացինք, որ անհրաժեշտ է կենսագործել ժողովրդապետության լենինյան կոնցեպցիան: Սակայն պետք է ընդունել, որ հունվարյան պլենումի գաղափարները ամենևին էլ միանշանակ չընկալվեցին կուսակցության ու հասարակության մեջ, հարկ եղած զարգացումն ու խորացումը չստացան: Իսկ ամենագլխավորը՝ դրան չհաջորդեցին գործնական քայլեր: Հիմա պարզ է, թե ինչու հենց այդպես ստացվեց: Բանը այն է, որ գուցե առաջին անգամ այդքան սրությամբ առաջադրվեց կադրերի պատասխանատվության հարցը: Դա մտահոգեց նրանց որոշակի մասին, անդրադարձավ պլենումի որոշումների նկատմամբ նրանց վերաբերմունքի վրա: Այդ պայմաններում քաղբյուրոն միշտ չէ, որ գործում էր հետևողականորեն և սկզբունքայնորեն: Բայց կյանքը մեզ ստիպեց անդրադառնալ այդ հարցերի ամբողջ կոմպլեքսին, ընդ որում արդեն երկրում ծավալված դեմոկրատացման ճնշմամբ: Այդ իրադրության մեջ էլ ծնունդ առավ XIX կուսակցական կոնֆերանսի անցկացման գաղափարը: Կոնֆերանսի օրակարգում գլխավորը համապարփակ քաղաքական ռեֆորմի հարցն էր:

Կոնֆերանսի մշակած սկզբունքների հիման վրա մենք հիմա ունենք իշխանության նոր հաստատություններ վերից վար, որոնք կազմավորվեցին դեմոկրատական ընտրությունների շնորհիվ: Կարելի է արձանագրել, որ դա վերակառուցման գլխավոր նվաճումներից մեկն է, հասարակության նորացման ճանապարհին կարևորագույն քայլ, առանց որի մենք հազիվ թե կարողանայինք թևակոխել հասարակության հեղափոխական վերափոխման նոր փուլ: Քաղաքական համակարգի բարենորոգման պրոցեսը բարդ է ընթանում: Փոխվում են կուսակցական, պետական, խորհրդային մարմինների, հասարակական կազմակերպությունների դերն ու ֆունկցիաները:

Այդ ամենը տեղի է ունենում, ուղղակի կասենք, հիվանդագին, քանի որ շոշափում է բնակչության ամենատարբեր սոցիալական խավերի ու խմբերի շահերը, երկրի կառավարման ամբողջ համակարգը, այդ գործերով զբաղված միլիոնավոր մարդկանց: Եվ այս ամենը կարելի է հասկանալ, ընկերներ: Կընդգծեմ սոսկ մի բան. եթե մենք չգնայինք այդ ուղիով, ապա չի կարելի բացառել, որ հասարակության հարանուն քաղաքականացումը կարող էր քաոսային բնույթ ստանալ, ինչը հղի կլիներ պայթյունալի սոցիալական հետևանքներով: Ներկա պայմաններում, երբ հասարակությունը հուզված է և համակված տագնապներով, մեր համագումարը իր առաքելությունը կկատարի, եթե պատասխանատվություն դրսևորի, որոշի մոտակա նաև



տակներն ու անելիքները, գործողությունների ծրագիրը, որոնք կհամախմբեն թե կուսակցությանը և թե հասարակությանը: Հիմա ոչ թե գժտությունների, այլ վերակառուցումն առաջ տանելու պրակտիկ գործողությունների ժամանակն է: Հիմա, երբ ավարտված է քաղաքական ռեֆորմի երկրորդ փուլը, մենք կուսակցության խնդիրն ենք համարում նպաստել ժողովրդապետության նորաստեղծ մարմինների ձևավորմանը: Այժմ հեղափոխական փոփոխություններ են տեղի ունենում իշխանության հանրապետական մարմինների գործունեության մեջ, որոնց տնօրինությանն է անցնում նախկինում կենտրոնում լուծվող հարցերի մի զգալի մասը: Դա նրանց տալիս է նոր հնարավորություններ, բայց նաև բարձրացնում նրանց պատասխանատվությունը գործերի ընթացքի համար, սոցիալ-տնտեսական և ժողովրդի ամենօրյա կյանքը շոշափող մյուս հարցերի լուծման համար:

Տեղական խորհուրդների և ինքնակառավարման մասին օրենքին համապատասխան արմատապես փոխվում է նաև տեղական խորհուրդների վիճակը: Հիմա նրանց տրամադրության տակ կլինեն ավելի շատ նյութական ռեսուրսներ, որոնք պետք է ռացիոնալ օգտագործվեն ի շահ շրջանների և քաղաքների զարգացման: Եթե դրան ավելացնենք, որ խորհուրդների աշխատանքը ընթանում է նոր օրենսդրական հիմքի վրա, նոր կազմակերպական ձևերով, որ արմատապես փոխվում են խորհուրդների ապարատի կառուցվածքն ու վիճակը, ապա այստեղ իրոք կենսականորեն կարևոր շատ անելիքներ կան: Մենք բոլորս էլ խորապես շահագրգռված ենք, որ ավելի արագորեն ընթանա իշխանության նոր մարմինների ձևավորման պրոցեսը, և կուսակցական կոմիտեները պետք է ամեն կերպ աջակցեն դեմոկրատացման պրոցեսների զարգացմանը, խորհուրդների կողմից իշխանության նոր լիազորությունների յուրացմանը:

Ընկերներ, այժմ առաջին պլան է դուրս եկել օրինականության և իրավակարգի ամրապնդման խնդիրը: Մարդիկ տարբեր համաժողովներում թե կուսակցությանը և թե խորհրդային իշխանության նորընտիր մարմիններին մի կտրական պահանջ են ներկայացնում՝ կասեցնել հանցագործությունների, հակահասարակական դրսևորումների աճը, վճռաբար ամրապնդել իրավակարգը:

Համագումարում չի կարելի սահմանափակվել սոսկ այն ցուցումով, որ օրենքը պետք է գործի ամենուրեք: Այդ մասին մենք արդեն խոսել ենք, և ոչ մեկ անգամ, բայց գործը առայժմ դանդաղ է բարեփոխվում: Ուստի մենք պետք է խորացնենք ստեղծված ոչ հասարակ իրավիճակի վերլուծությունը և տանք մեր գնահատումներն ու առաջարկությունները:

Ես կուզենայի ամենից առաջ ձեր ուշադրությունը բևեռել ահա թե ինչի վրա: Մենք պետք է պարզորոշ տեսնենք երկրի քաղաքական ու սոցիալական կայունության մակարդակի հետ իրավակարգի և օրինականության վիճակի անմիջական կապը: Քանի որ դա այդպես է, ապա կայունության ամրապնդմանն էլ պետք է ամենից առաջ նպատակամղված լինի իշխանության նորաստեղծ մարմինների գործունեությունը: Ու չպետք է սպասել այդ առթիվ ինչ-որ նոր ցուցումների և օրենքների, արդեն այժմ բավարար քաղաքական ու իրավական միջոցներ կան վիճակը վճռաբար բարելավելու համար: Միայն պետք է գործել, և գործել վճռականորեն: Շատ լավ է, որ շատ խորհուրդներ դա հասկացել են և փաստորեն արդեն ձեռնամուխ են եղել պրոբլեմի լուծմանը: Թեև կան նաև այնպիսիք, որոնք դեռ գտնվում են «միտինգայնության» փուլում:

Երկրորդ: Կարծում եմ, շատ բան է բացատրվում դատախազության, ներքին գործերի մինիստրության մարմինների և նույնիսկ դատարանների աշխատողների անվստահության յուրատեսակ կոմպլեքսով, որը ձևավորվել է միտինգային ձեռնարկումների, ցույցերի, տարբեր կարգի վերջնագրերի ճնշմամբ: Կամ նույնիսկ ընտրովի մարմինների ներգործությամբ, որոնք այս կամ այն պատրվակով խանգարում էին, հիմա կան այդպիսի շատ փաստեր, դատախազությանը, միլիցիային և դատարաններին ապահովվելու օրենքների գործողությունը:

Սրա հետ, ընկերներ, հաշտվել չի կարելի: Այդ կերպ մենք ընդհանրապես հեռու կգնանք: Ուստի կուսակցական կազմակերպությունները պետք է մեր հասարակության դեմ հանդիման հանդես գան հայտարարությամբ, որ մենք դեմ ենք իրավապահ մարմինների վրա գործադրվող ամեն մի ճնշման: Վստահ եմ, որ երկրի հասարակայնությունն էլ նույն կարծիքին է:

Երրորդ: Մենք արտահայտվում ենք իրավապահ մարմինների հետագա ամրապնդման, անհրաժեշտ ամեն ինչով նրանց ապահովման, աշխատավորների նյութա-

տին: Արվեստի բնագավառում գրաքննություն չպետք է լինի, բայց պետք է լինի արվեստագետի բարոյական պատասխանատվություն ժողովրդի հանդեպ:

Համագումարին ուղղված ուղերձում, որը հրապարակվեց երեկ, խորհրդային մշակույթի և արվեստի գործիչները կուսակցությանը կոչ են անում իր ամբողջ ազդեցությունը, բարոյական ու նյութական կարողությունն օգտագործել հասարակության համար կենսականորեն կարևոր այս բոլոր խնդիրների լուծման նկատմամբ նոր մոտեցումներ հաստատելու համար: Ժողովրդի հոգևոր աշխարհի համար տագնապով ու հոգատարությամբ ներթափանցված այդ կոչին արձագանքելը մեր սրբազան պարտքն է: Համոզված եմ, որ բոլոր պատվիրակները կարտահայտվեն հօգուտ այն բանի, որ մշակույթն ու արվեստը, եթե կարելի է այսպես ասել՝ հոգու էկոլոգիան, դառնան մեր առաջնահերթ ծրագրային նպատակներից մեկը:

Ընկերներ, մշակելով վերակառուցման ծրագիրը, մենք հասկանում էինք, որ այն չի կարող իրագործվել, եթե արմատապես չփոխվեն երկրի կյանքի արտաքին պայմանները: Իսկ դրա համար հարկավոր էր փոխել մեր մոտեցումները և միջազգային նոր քաղաքականություն առաջարկել աշխարհին:

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո տեղի են ունեցել վիթխարի փոփոխություններ՝ սոցիալական, ազգային, տնտեսական, քաղաքական, տեխնոլոգիական, գիտական, բնապահպան, ժողովրդագրական: 70-ական թվականների կեսերին դրանք վերափոխեցին նրա ամբողջ նկարագիրը, փոխելով մարդկության գոյության բուն հիմքերը:

Ծնունդ է առնում նոր քաղաքակրթություն: Ծնունդ է առնում, որպեսզի կամ կործանվի, չկարողանալով հաղթահարել վիթխարի համապարփակ սպառնալիքները, կամ մշակի համակեցության որակապես նոր կանոններ, միանգամայն նոր համաշխարհային քաղաքականություն:

Հենվելով արդի միջազգային իրադրության վերլուծության վրա, զինաթափման կուրս բռնելով և որոշակի փորձ կուտակելով նոր արտաքին քաղաքականություն վարելու բնագավառում, մենք առավել համոզվեցինք միջազգային գործունեության հանգուցային երեք նախադրյալների ճշտությանը:

Նախ, չի կարելի սեփական անվտանգությունն ապահովել ուրիշների անվտանգության հաշվին, սեփական շահերը պաշտպանել ի վնաս ուրիշների շահերի, հավակնել այն բանին, իբր դու ավելի լավ գիտես, թե մյուս ժողովուրդներն ու պետությունները ինչպես կարգավորեն իրենց գործերը: Յուրաքանչյուր ժողովրդի համար ընտրության ազատության ճանաչումը համաշխարհային նոր կարգի կառուցման նախադրյալն է: Երկրորդ, չի կարելի բարգավաճ, ազատ ու դեմոկրատական հասարակության հասնել միայնակ, իր ուղին հակադրելով հասարակական զարգացման մյուս ուղիներին: Դարաշրջանի հրամայականը համազարգացումն է, համաստեղծագործումը, համագործակցությունը: Եվ, երրորդ, մեր ժողովրդական տնտեսությունը համաշխարհային էկոնոմիկային շաղկապելը հարկավոր է ոչ միայն սեփական տնտեսությունն արդիականացնելու համար, այլև ուրիշ ժողովուրդների հետ համատեղ պատմության միայն խաղաղ ժամանակաշրջանի նյութական հիմքը կառուցելու, մարդկության համապարփակ պրոբլեմները լուծելու համար: Ի դեպ, պետք է նկատեմ, որ մեր միասնացման հեռանկարային ուղղություններից մեկը ռազմական արտադրության փոխարկի բնագավառում համագործակցելն է: Արդեն շփումներ են հաստատվել ամերիկացիների, իտալացիների, գերմանացիների, ուրիշների հետ: Այդ բնագավառը կարող է յուրատեսակ «առաջատար» դառնալ միասնացման կապերի ոլորտում, քանի որ մենք արդեն ունենք բարձր տեխնոլոգիաներ և գիտական առաջավոր մշակումներ, որոնք հետաքրքրություն են ներկայացնում մեր համագործակիցների համար, հասկանալի է՝ փոխադարձ հիման վրա: Մեզ համար այստեղ է մեր առավել գիտական ու տեխնիկապես արդիական արտադրությունները քաղաքացիական կարիքների համար արտադրանքի թողարկմանը միակցելու, ընդ որում՝ ամենաասեղմ ժամկետներում, արդյունավետ ուղիներից մեկը: Իսկ միջազգային քաղաքականության տեսակետից անչափ կարևոր է, որ թուլանում է սպառազինությունների մրցավազքը սնուցող կասկածամտության ու անվստահության թերևս ամենաակտիվ ազդակներից մեկը:

Չխորանալով այս մեծ հարցի բոլոր մանրամասների մեջ, փոխարկի պետական ծրագրի նախապատրաստման առնչությամբ ասեմ, որ դա հսկայական պետական կարևորություն ունեցող գործ է: Այն խորապես մտածված որոշումներ է պահանջում: Պետք է խելամտորեն տնօրինել և գիտական, և կադրային, և արտադրական



րողությունները: Այստեղ մենք պետք է լավ աշխատենք ազատվելու համար այն սխալներից, որոնք թույլ տրվեցին նախնական փուլում:

Նոր մոտեցումների վրա խարսխված քաղաքականությունը, նոր մտածողության շրջանակներում առաջ քաշված առաջարկությունները արդեն էապես կազդուրել են միջազգային իրադրությունը, հետ մղել համաշխարհային պատերազմի սպառնալիքը: Մեզ համար հնարավորություն է բացվել կրճատելու ռազմական ծախսերը, և, ինչպես արդեն ասացի, միջոցները փոխանցել խաղաղ նպատակների համար: Վերակառուցման և նոր մտածողության շնորհիվ ԽՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերություններում շրջադարձ տեղի ունեցավ առճակատումից և սպառազինությունների մրցակցությունից դեպի փոխըմբռնում, իսկ մի շարք հարցերում՝ նույնիսկ դեպի գործակցություն: Դա բարեշրջեց ամբողջ համաշխարհային իրադրությունը, դրեց մարդկության կյանքում դեպի աննախադեպ խաղաղ ժամանակաշրջան ընթանալու սկիզբը:

Նորմալացված են հարաբերությունները Չինաստանի հետ, ինչը հսկայական նշանակություն ունի երկու մեծ ժողովուրդների և ընդհանրապես աշխարհի համար:

Եվրոպայում, որը ամենակատաղի «սառը պատերազմի» և սպառազեն դիմակայության ասպարեզն էր, առաջին անգամ սկսվեց իրական, այդ թվում միջուկային զինաթափման գործընթաց: Մեր պետության ողջ պատմության ընթացքում մենք այնպիսի լավ ու բարյացակամ հարաբերություններ չէինք ունեցել մայր ցամաքի երկրների մեծամասնության հետ, ինչպես այժմ: Համաեվրոպական գործընթացը սկսել է ստեղծել տասնյակ տարբեր երկրների և ժողովուրդների միջպետական շփման՝ համաշխարհային պատմության մեջ աննախադեպ ձև: Այստեղ առաջին անգամ օրակարգում դրվել է տնտեսական, մշակութային, բնապահպանական և տեղեկատվական ազատ ասպարեզի ստեղծումը: Այս ամենը հնարավոր դարձավ շնորհիվ մեր նոր միջազգային քաղաքականության և համագործակցության:

Խոր փոփոխություններ են տեղի ունենում Արևելյան Եվրոպայում: Երբ ասում են, թե դա «սոցիալիզմի փլուզումն է», մենք հանդիպական հարց ենք տալիս. ինչպիսի՞ «սոցիալիզմի»: Այնպիսի՞, որն ըստ էության ստալինյան ավտորիտար-բյուրոկրատական համակարգի տարբերակն էր, որից ինքներս ենք հրաժարվել: Մեզ նույնիսկ կշտամբում են, թե մենք «այդտեղից հեռանում ենք առանց մարտի»: Դուրս է գալիս՝ խորհուրդ են տալիս դիմել այն բանին, ինչին դիմում էին առաջներում, և ինչից վճռականորեն ազատվել ենք և ինչը վճռականորեն դատապարտում ենք:

Այո, կա այն հարցը, թե այդ երկրներն ո՞ւր կգան իրենց սոցիալ-տնտեսական զարգացմամբ: Բայց դա իրենց՝ ժողովուրդների ընտրության հարցն է: Իսկ մենք գործել ենք և կգործենք՝ խստիվ առաջնորդվելով ազատ ընտրության սկզբունքով, որը դարձել է առաջադիմության հրամայականը և ամբողջ արդի քաղաքակրթության ինքնապահպանման պայմանը:

Մենք այսօր և վաղը ինչպե՞ս ենք կառուցելու մեր հարաբերությունները արևելաեվրոպական երկրների հետ: Որպես բարեկամ հարևանների հետ, որպիսիք մեզ դարձրել է ոչ միայն աշխարհագրությունը, այլև պատմությունը: Դրանում, հատկապես պատերազմից հետո, իրական շատ լավ, արժեքավոր բաներ կային: Այն, որ ԽՍՀՄ-ը վճռորոշ դեր խաղաց ֆաշիզմից այդ երկրների ազատագրման գործում և հետո բազմիցս անկեղծորեն օգնում էր նրանց, մնացել է ժողովուրդների հիշողության մեջ և չի կարող չանդրադառնալ մեր հարաբերությունների հետագա զարգացման վրա: Բացի այդ, և սա է գլխավորը, կան փոխադարձ տնտեսական և քաղաքական շահեր: Դրանք մեզ մերձեցնում են դեպի խաղաղ Եվրոպա, դեպի «ընդհանուր տուն» առաջընթացում:

Դրանք համընկնում են Վարշավայի պայմանագիրը վերափոխելու ձգտման մեջ, ինչի շուրջը մեկ ամիս առաջ պայմանավորվեցինք քաղաքական խորհրդատվական կոմիտեի Մոսկվայում կայացած խորհրդակցությունում: Ամենաամուր հարաբերությունները նրանք են, որոնք կառուցվում են կամավորության, փոխադարձության, հարգանքի և համագործակցության վրա:

Կուսակցությունն ու ժողովուրդը բարձր գնահատեցին մեր արտաքին քաղաքականությունը, այն հավանության արժանացավ և հավաստվեց XIX կուսակցական կոնֆերանսի փաստաթղթերում, ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարի հատուկ որոշման մեջ: Մեր նոր մոտեցումները և գործնական քայլերը հսկայական արձագանք առաջացրին և պաշտպանության արժանացան ամբողջ աշխարհում: Եվ մենք վճռականորեն մերժում ենք կուսակցության մշակած ու նրանց կողմից վարվող արտաքին քաղաքական կուրսը վարկաբեկելու փորձերը:

Կարծում եմ, ԽՄԿԿ XXVIII համագումարը, ըստ արժանվույն գնահատելով այդ տարիներին միջազգային ասպարեզում ձեռք բերված ակներև արդյունքները, մեր երկրի և ամբողջ աշխարհի ժողովուրդների առջև վերստին կհավաստի նոր մտածողության վրա հիմնված արտաքին քաղաքական կուրսի անխախտելիությունը:

Մեր արտաքին քաղաքականության արդյունավետությունը պայմանավորվում է նախ և առաջ նրանով, որ այնտեղ իրենց արտացոլումն են գտել մարդկության համընդհանուր տագնապներն ու հույսերը: Դրա հետ մեկտեղ, և սա նույնպես բոլորի համար պարզ է, մեր քաղաքականության արդյունավետությունը ապահովվում է պետության հզորությամբ, որի բաղկացուցիչ մասն են զինված ուժերը: Հսկայական նշանակություն ունեցավ այն, որ նոր գաղափարները, կոնստրուկտիվ նախաձեռնությունները առաջարկվեցին մեծ տերություններից մեկի կողմից: Ընդ որում նա ոչ միայն հայտարարեց, այլև գործնականորեն հաստատեց նվիրվածությունը իր նոր գաղափարներին:

Դրա ամենահամոզիչ վկայությունը մեր պաշտպանական դոկտրինան է, որի հիման վրա մենք գնում ենք դեպի ռազմական խոշոր բարեփոխում: Հուսով եմ, համագումարի ծրագրային հայտարարության մեջ կվավերացվեն դրա սկզբունքները: Ոչ ոքի մեջ կասկած չպետք է լինի, որ բանակն այսուհետև էլ կվայելի կուսակցության աջակցությունը: Առանձնակի հոգատարություն պետք է դրսևորվի նրանց նկատմամբ, ովքեր նվիրվել են զինված ուժերում հայրենիքին ծառայելու գործին: Բանակը դա միլիոնավոր մարդիկ են, որոնք պատասխանատու, իսկ շատ դեպքերում նաև վտանգներով լի պետական աշխատանք են կատարում:

Ամենասեղմ ձևով այսպիսիք են, ընկերներ, կատարված աշխատանքի հիմնական արդյունքները:

Մենք, իրոք, վիթխարի, աննախադեպ գործի մեջ ենք ներքաշվել հանուն մեր ժողովրդի բարօրության ու ապագայի: Եղել են թերամշակումներ, սխալներ, հապաղում. դրանց մասին ես ասացի, հավանաբար դուք էլ ավելացնելու բան կունենաք այս հարցի առթիվ:

Այո, կյանքը շատ ավելի հարուստ է, քան մենք պատկերացնում էինք, ծավալելով հեղափոխական բարեփոխումները: Հրապարակայնությունը և դեմոկրատացումը, միլիոնավոր մարդկանց պատմական ստեղծագործության ասպարեզ դուրս գալը հասարակության զարգացմանը հաղորդեցին իրենց օբյեկտիվ տրամաբանությունը, որը և դրական, և բացասական անսպասելի շատ բան էր ծնում: Առանց այս տարիներին ձեռք բերած փորձի և կուտակած գիտելիքների, այդ թվում և սեփական հասարակության մասին, մենք հիմա չէինք մոտենա վերակառուցման վճռորոշ փուլին:

## III.

## ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

Ընկեր պատվիրակներ, XXVIII համագումարի հիմնական առանձնահատկությունն այն է, որ մենք հավաքվել ենք, ինչպես արդեն ասացի, սոցիալիստական ընտրության շրջանակներում մեր հասարակության վերակառուցման և արմատական փոփոխման բեկումնային փուլում: Բոլորին հուզում են այն հարցերը, թե ինչի՞ կհանգեցնեն հեղափոխական վերափոխումները, թե դրանք ինչքանո՞վ են բխում աշխատավորության շահերից, կամրապնդե՞ն, արդյոք, սոցիալական արդարությունը, դեմոկրատիան, ազատությունը:

Այս իրավիճակում, բնականաբար, բազմաթիվ տեսակետներ են ծագում: Այդ ամենը հաշվի էր առնվում ծրագրային հայտարարության նախագիծը պատրաստելիս, որը ձեր ձեռքին է: Դրանով կուսակցությունը, ելնելով ժողովրդի հանդեպ իր ունեցած պատասխանատվությունից, առաջարկում է մոտակա հեռանկարի ծրագիրն ու քաղաքականությունը:

Նախահամագումարյան բանավեճի ընթացքում սևեռուն ուշադրության առարկա էր կուսակցության տեսական գործունեությունը: Նույնիսկ դժգոհություններ են արվում, իբր կուսակցության ղեկավարությունը երկիրը ներքաշել է «համապարփակ փորձարկի» մեջ, չունենալով տեսական մշակումներ, բարենորոգումների համադրույթներ: Ընդ որում դա արդեն այնքան հաճախակի է սկսել կրկնվել, որ ստեղծվել է մի յուրատեսակ հակավերակառուցողական դրոշմակերպ:

Եկեք պարզենք: Նախ պետք է կրկնեմ այն, ինչ սսել եմ բազմիցս. վերակառուցման համադրույթը մարդկանց ինչ-որ խմբի մտքի այսրոպեական սպլծառացումը չէ: Սկսած ԽՄԿԿ արդեն XX համագումարից կուսակցության և հասարակության մեջ որոնումներ ծավալվեցին: Ցավոք, դրանք աջակցության չարժանացան, մեծ մասամբ ճնշվում էին: Լճացման տարիներին, երբ փորձեր էին արվում վերականգնելու սոցիալիզմի ստալինյան մոդելը, տեսությանը պաշտոնական քաղաքականության ջատագովական սպասարկման դեր էր հատկացված:

Մենք լիակատար հիմունքով ասում ենք, որ վերակառուցմանը բառացիորեն մեր տառապանքով ենք հասել: Եվ դրա հիմքում ընկած համադրույթը իր մեջ ներառել է ամենայն լավագույնը, որը հասունացել էր հասարակության ընդերքում, կուսակցության, գիտության, մշակույթի մեջ:

1985 թվականի ապրիլյան պլենումը հուժկու խթան տվեց տեսական որոնումներին, հասարակության կյանքի ցավոտ հիմնահարցերի ազատ քննարկման հնարավորություն ստեղծեց: Սկզբունքորեն կարևոր է, որ կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն գլխավորեցին երկրի համար բացառիկ անհրաժեշտ ստեղծագործական այդ աշխատանքը և դրա համար ստեղծեցին բարենպաստ քաղաքական պայմաններ:

Արդեն դրա առաջին փուլում մենք հասանք այն բանի ըմբռնմանը, որ հասարակությունը սրմատական նորացման կարիք ունի: Այսպես ծնունդ առավ վերակառուցման հիմնական մտահղացումը. սոցիալիստական ընտրության շրջանակներում խորապես դեմոկրատացնել և մարդկայնացնել հասարակությունը, այն դարձնել ազատ, ստեղծել մարդուն վայել կենսապայմաններ:

Այս մտահղացման իրագործման ընթացքում մշակվում էին արմատական տնտեսական ռեֆորմի, քաղաքական համակարգի, ֆեդերացիայի արմատական վերափոխումների, իրավական պետության կազմավորման գաղափարները: Մշակվեցին քաղաքական նոր մտածողության հիմունքները, որի առանցքը կազմում է համամարդկային արժեքների գերակայությունը: Վերակառուցման տեսությունը անհնար կլիներ առանց այն բոլոր վիթխարի փոփոխությունների իմաստավորման, որոնցով աշխարհը մոտեցել է 20-րդ դարի վերջին:

Մենք քայլ առ քայլ խորացնում էինք հեղափոխական վերափոխումների նպատակների ու մեթոդների մեր ըմբռնումը: Ըստ էության դա, Լենինի խոսքերով ասած, պահանջեց սոցիալիզմի նկատմամբ մեր ամբողջ տեսակետի վերանայում: Դրա շնորհիվ մենք հանգեցինք վերակառուցման ըմբռնմանը, որպես նոր հեղափոխություն, այն գործի տրամաբանական շարունակություն, որի սկիզբը դրեց մեծ Հոկտեմբերը:

Ես բնավ մտադիր չեմ վերակառուցման տեսությունը ներկայացնելու որպես բոլոր առումներով ինչ-որ ավարտուն բան, որպես ինչ-որ ավարտուն համակարգ, գերագույն ճշմարտություն: Նման պահանջներ ու հավակնություններ շատ ենք ունեցել: Փորձը մեզ սովորեցրեց պատրաստ լինել ինքնաքննադատական գնահատականներին, թե տեսության և թե քաղաքականության մեջ անհրաժեշտ ճշգրտումների կատարմանը, որոնք պետք է արձագանքեն երկրի և աշխարհի իրական գործընթացներին:

Այնպես որ, երբ մեզ ասում են. տվեք սոցիալիզմի ավարտուն նոր տեսությունը, մենք պատասխանում ենք. «սոցիալիզմ» հասկացությունը նոր բովանդակությամբ կարող են հարստացնել միայն կյանքը, միայն ազատ աշխատանքը, ժողովրդի ինքնակառավարումը և բարեկեցությունը: Եթե դա տեղի չունենա, եթե այդ հասկացությունը սոսկ «ճոճվի» զեկուցումներում և առաջնորդողներում, որոնց հեղինակները կատեգորիաների մոդելավորման մտավարժանքներ են անում, ապա սոցիալիստական գաղափարը անհուսալիորեն կարժեզրկվի: Նախ ասացեք, թե դուք ինչ եք մտադիր անել ձեր երկրի համար, մեր ժողովրդի համար, և այդ ժամանակ պարզ կլինի, թե դուք իրականում ինչ եք ուզում և ինչ նկատի ունեք սոցիալիզմ ասելով: Մենք ասում ենք. սոցիալիզմը մասսաների իրական շարժումն է, կենդանի ստեղծագործությունը: Եվ ես համոզված եմ, որ ԽՄԿԿ-ն ճիշտ է սահմանել շարժման նպատակը. մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմ:

ԽՄԿԿ XXVIII համագումարի ծրագրային հայտարարության նախագծում այս առումով ձևակերպված են մեր հայացքները: Ինչպե՞ս են դրանք հարաբերակցվում մարքսիզմի հետ: Մեր կուսակցության համար սա սկզբունքային հարց է:

Հայտնի է, որ Մարքսի, Էնգելսի և Լենինի ստեղծած սոցիալական տեսության բովանդակությունը ձևավորվել է 19-րդ դարի, իսկ Լենինինը՝ նաև 20-րդ դարի առաջին տասնամյակների իրողությունների վերլուծության հիման վրա: Այդ ժամա-

նակվանից աշխարհը զարմանալիորեն փոխվել է, այդ թվում՝ հենց մարքսիստական մտքի, Հոկտեմբերյան հեղափոխության, համազգային հեղափոխական և դեմոկրատական շարժման ազդեցությամբ: Իսկ մենք տասնամյակներ շարունակ փորձում էինք կյանքի բոլոր դեպքերի համար պատասխաններ փնտրել դասականներից արված մեջբերումներում, մոռանալով, որ հենց իրենք՝ դասականները, պահանջում էին հաշվի առնել յուրաքանչյուր տեսության պատմական պայմանավորվածությունը, ծաղրում նրանց, ովքեր փորձում էին մարքսիզմը վերածել յուրօրինակ սուրբ գրքի: Բուն կյանքը մեզ ստիպեց վերհիշել դա և ըստ արժանվույն գնահատել մարքսիստական դիալեկտիկայի հիմնարար օրենքների նշանակությունը և առաջին հերթին կոնկրետ իրավիճակի կոնկրետ վերլուծության պահանջը: Եվ միայն այդ հիմքի վրա հետևություններ անել քաղաքականության համար:

Կրկնում եմ, վերակառուցման համադրույթը շարժման, ինքնազարգացման մեջ է, պետք է նոր գաղափարներով ու հետևություններով հարստանա մեր առաջընթաց շարժման համեմատ: ԽՄԿԿ-ն վճռականորեն դեմ է դոգմատիզմին և տիրացությանը, կողմնակից է սոցիալիզմի տեսության և պրակտիկայի նկատմամբ հետևողական ստեղծագործական մոտեցմանը, 20-րդ դարի պատմական փորձի, Մարքսի, Էնգելսի և Լենինի, հեղափոխական և առաջադիմական մտքի մյուս ներկայացուցիչների ժառանգության իմաստավորմանը:

Վերակառուցման մեր համադրույթի կատարելագործման աշխատանքը շարունակվում է: Ուստի, ըստ երևույթին, ճիշտ կլինի ծրագրային հայտարարություն ընդունելով, ներկայումս գործող ԽՄԿԿ ծրագիրը համարել ուժը կորցրած և առաջ գնալ դեպի կուսակցության նոր ծրագիրը: Եվ այս նպատակով համագումարում կազմել համապատասխան հանձնաժողով:

Ընկերներ, կոմունիստները և ամբողջ հասարակությունը համագումարից ակնկալում են բուն կուսակցությանը վերաբերող ամենակարևոր հարցերի պատասխանը: Ներկայումս տեղի է ունենում կուսակցության կողմից հասարակության մեջ սեփական դերի, տասնամյակներով ձևավորված կառուցվածքի սկզբունքների և գործունեության մեթոդների վերաիմաստավորման բնական և դրա հետ մեկտեղ դժվարին գործընթաց: ԽՄԿԿ-ին վերաբերող նախկին պատկերացումները կարոտ են քննադատական գնահատման և լուրջ փոփոխությունների:

Վերջին ժամանակներս կուսակցությունը թե արդարացի և թե անարդարացի կերպով լուրջ քննադատության է ենթարկվում: Մենք ինքներս էլ մեզ չենք խնայում: Ուրիշներն էլ մեզ չեն խնայում: Եվ այստեղ կուզենայի ասել ահա թե ինչ:

Տասնամյակներ շարունակ ԽՄԿԿ-ն հարմարեցված է եղել ավտորիտար-բյուրոկրատական համակարգի սպասարկմանը: Եվ դա հանգեցրել է ներկուսակցական հարաբերությունների, կադրերի ընտրության լուրջ ձևախեղումներին և որոշումների մշակումից միլիոնավոր կոմունիստների փաստական հեռացմանը, որը փաստորեն կուսակցական կազմակերպություններում ստեղծել է անտարբերության, հուլության և պասիվության մթնոլորտ:

Ահա թե ինչու, երբ քննադատության են ենթարկվում երկրում տեղի ունեցած ձևախեղումները, որոնց համար, իհարկե, պատասխանատվություն է կրում կուսակցության ղեկավարությունը, դա բնավ էլ չի նշանակում միլիոնավոր կոմունիստների համընդհանուր մեղավորություն: Հազիվ թե ինչ-որ մեկը կարողանա ժխտել կոմունիստների, հիրավի, հերոսական դերը Հայրենական մեծ պատերազմի ժամանակաշրջանում խորհրդային ժողովրդի գործած մարտական սխրանքի մեջ: Ասենք մեր երկրի ամբողջ աշխատանքային պատմությունն էլ աչքի է ընկնում կոմունիստների ավանգարդային դերի օրինակներով:

Այս ամենը մենք լավ գիտենք: Բայց դա մեզ բնավ չի ազատում այն բանից, որ մշտապես և քննադատաբար իմաստավորենք մեր գործունեությունը, որպեսզի ապագայի համար քաղաքական ճիշտ հետևություններ անենք:

Նախահամագումարյան բանավեճը մեծ տարակարծություններ առաջացրեց արդի պայմաններում կուսակցության շինարարության և գործունեության սկզբունքների հարցում: Բայց մի կետում կարծիքները համընկնում են: Դա այն բանի ըմբռնումն է, որ կուսակցությունը քաղաքական կամ բարոյական իրավունք չունի հրաժարվելու վերակառուցման ճակատագրի համար պատասխանատվությունից, խուսափելու իր դերից, հայտնվելու հասարակական գործընթացի ճամփեզրին:

Ինչպիսի՞ն ենք պատկերացնում նորացված ԽՄԿԿ-ն:

— Սոցիալիստական ընտրության և կոմունիստական հեռանկարի կուսակցություն, համախոհների կամավոր միություն, որն իր քաղաքականության մեջ արտահայտում է բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության շահերը:

— Կուսակցություն, որը հավատարիմ է համամարդկային, մարդասիրական իդեալներին, զգայուն է ազգային ավանդույթների և իղձերի նկատմամբ և դրա հետ մեկտեղ անհաշտ է շովինիզմի, ազգայնական և ռասիզմի, հետադիմական գաղափարախոսության և խավարամոլության բոլոր դրսևորումների նկատմամբ:

— Կուսակցություն, որն ազատագրված է գաղափարախոսական քարացածությունից, դոգմատիզմից, ձգտում է նախաձեռնող դեր խաղալ քաղաքական և գաղափարախոսական գործընթացներում, գործելով համոզման, իր քաղաքականության պրոպագանդման մեթոդներով, զարգացնելով երկխոսության, բանավեճի, համագործակցության և պարտնյորության հարաբերությունները երկրի բոլոր առաջադիմական հասարակաքաղաքական ուժերի հետ:

— Կուսակցություն, որն իր անդամների փոխհարաբերությունները կառուցում է բացառապես կուսակցական ընկերականության, յուրաքանչյուրի կարծիքի հարգման, սեփական դիրքորոշում ունենալու փոքրամասնության իրավունքների ճանաչման, քննարկման լիակատար ազատության և մեծամասնության ընդունած որոշումների պարտադիր լինելու հիման վրա:

— Կուսակցություն, որը ներքին կյանքում հաստատում է ինքնակառավարման սկզբունքներ, կուսակցական կազմակերպությունների գործողությունների ազատություն, միութենական հանրապետությունների կոմկուսների ինքնուրույնություն, որոնք միավորված են ծրագրային նպատակների և կանոնադրական դրույթների միասնությամբ:

— Կուսակցություն, որը փոխգործողության կապերի համար բաց է տարբեր երկրների և տարբեր կողմնորոշման կոմունիստների, սոցիալ-դեմոկրատների, սոցիալիստների, արդի քաղաքական ու գիտական մտքի բազմաթիվ այլ հոսանքների ներկայացուցիչների առջև: Նախահամագումարյան բանավեճը ի հայտ բերեց մի քանի հանգուցային հարցեր, որոնք հայտնվեցին կարծիքների բախման կենտրոնում: Քանի որ դրանք կարևոր են ԽՄԿԿ ռեֆորմի ըմբռնման համար, դրանց առնչությամբ պետք է հստակ դիրքորոշում մշակել:

— Ավանգարդային կամ պառլամենտական կուսակցություն: Հանդես գալով ԽՍՀՄ սահմանադրության 6-րդ և 7-րդ հոդվածների փոփոխման օգտին, կուսակցությունը վավերացրեց, որ ինքը հրաժարվում է պետական մարմիններին փոխարինելուց, վարչակառավարչական պարտականություններ կատարելուց: Տարբեր փաստաթղթերում, այդ թվում XXVIII համագումարի ծրագրային հայտարարության նախագծում, խոսվում է այն մասին, որ հարկավոր է վերադառնալ կուսակցության, որպես հասարակության ավանգարդային ուժի լենինյան ըմբռնմանը:

Բայց այնպես չի՞ ստացվում արդյոք (նման հարցեր էլ են տալիս), որ մենք կրկին հավակնում ենք ինչ-որ բացառիկ դիրքի, միայն «ղեկավար դեր» տերմինը փոխարինում «ավանգարդայինով»: Այստեղ պարզություն է հարկավոր: Մենք գտնում ենք, որ ավանգարդային դերը չի կարելի պարտադրել հասարակությանը, այն կարելի է միայն նվաճել աշխատավորության շահերի համար ակտիվ պայքարով, պրակտիկ գործերով, սեփական քաղաքական ու բարոյական ամբողջ նկարագրով: ԽՄԿԿ-ն իր քաղաքականությունը կվարի և կառավարող կուսակցության մանդատի պահպանման համար կպայքարի դեմոկրատական գործընթացի, կենտրոնում և տեղերում օրենսդրական մարմինների ընտրությունների շրջանակներում: Այս իմաստով ԽՄԿԿ-ն գործում է որպես պառլամենտական կուսակցություն:

Հիմա կուսակցության համար ամենադժվար խնդիրը նրա ազդեցության համապատասխանեցումն է քաղաքական ու կազմակերպական նոր հնարավորություններին: Պետք է ելնել այն բանից, որ կուսակցությունը չի միջամտում խորհրդային մարմինների պարտականություններին: Իսկ դա նշանակում է, որ նա պատասխանատվություն չի կրում առանց իր հետ խորհրդակցելու ընդունվող որոշումների համար և իրեն վերապահում է դրանց հրապարակային քննադատության իրավունքը:

Սկզբնական կուսակցական կազմակերպությունները հնարավոր չեն համարում, ասենք, արդեն փաստորեն իրավունք էլ չունեն վերահսկելու ադմինիստրացիայի գործունեությունը ձեռնարկություններում ու կազմակերպություններում, մինիստրությունների ու գերատեսչությունների, խորհրդային և տնտեսական հիմնարկների ապարատի աշխատանքը: Բայց կուսակցական կազմակերպությունները չեն կարող լինել աշխատավորական կոլեկտիվներում կամ ռեգիոններում տեղի ունեցող գործըն-

թացների կողմնակի դիտորդներ: Նրանք պետք է սովորեն բազմապիսի խնդիրների լուծմանը ներգործել քաղաքական ու կազմակերպական նոր մեթոդներով, ներգործել կոմունիստների և նախ և առաջ ղեկավար կոմունիստների միջոցով: Կուսակցական կազմակերպությունների նոր դերն այն է, որ կոլեկտիվ կերպով՝ ժողովներում, համագումարներում, կոնֆերանսներում, պլենումներում դիրքորոշումներ մշակեն հասարակության կյանքի կարևորագույն հարցերի առթիվ, դրանք հասցնեն համապատասխան պետական և տնտեսական մարմիններին, այդ դիրքորոշումները պարզաբանեն հրապարակային բանավեճերում, կոմունիստներին նպատակամղեն այն բանին, որ նրանք պաշտպանեն դրանք պրակտիկ գործերում: ԽՄԿԿ-ի ազդեցության մասշտաբները առաջին հերթին կկանխորոշվեն կուսակցության կողմից հռչակվող գաղափարների ուժով, աշխատավորների համար դրանց գրավչությամբ:

Մյուս քաղաքական կուսակցությունների և հասարակական շարժումների նկատմամբ հետագա վերաբերմունքի մասին: Կարծում եմ, մեր կուսակցության համագումարը որոշակիորեն կարտահայտվի առաջադիմական կողմնորոշում ունեցող բոլոր կուսակցությունների և շարժումների հետ լայնորեն համագործակցելու օգտին, ի նպաստ վերակառուցման, ի շահ ժողովրդի համախմբվելու օգտին:

Նման համագործակցության շրջանակներում կարելի է քննարկել հասարակայնությանը մտահոգող ամեն տեսակ պրոբլեմներ, փնտրել համաձայնության և համատեղ գործողությունների ուղիներ: Վստահ եմ, որ կենտրոնում և տեղերում՝ իշխանության մարմիններում դեմոկրատական ուժերի, բոլոր նրանց համագործակցությունը, ովքեր անկեղծորեն շահագրգռված են քաղաքական կայունության, քաղաքացիական և ազգամիջյան համաձայնության պայմաններում հասարակության խոր բարեփոխմամբ, կկարողանար հսկայական օգուտ տալ երկրին:

Մասսայական հասարակական կազմակերպությունների նկատմամբ հետագա վերաբերմունքի մասին: Մեր կուսակցության համար միշտ էլ վիթխարի նշանակություն են ունեցել հարաբերություններն արհմիությունների հետ: Չէ որ դա ըստ էության նրա սոցիալական բազայի, միլիոնավոր բանվորների, ծառայողների հետ անմիջական և հետադարձ կապի հարցն է, իսկ վերջին տարիներին, գյուղում արհմիութենական կազմակերպությունների ստեղծման կապակցությամբ՝ նաև գյուղացիների հետ նույնպիսի կապի հարց:

Աշխատավորների կազմակերպությունները, որոնք կոչված են առաջին հերթին պաշտպանելու նրանց տնտեսական շահերն ու իրավունքները, պայքարելու, ինչպես Լենինն էր ասում, «ադմինիստրացիայի չափազանցությունների» դեմ, միշտ էլ կարևոր տեղ են գրավել մեր հասարակության կյանքում: Բայց դրանք, ինչպես հայտնի է, կատարում էին առավելապես օժանդակ պարտականություններ, գտնվում ստորադաս վիճակում: Դրան համապատասխանում էր նաև արհմիությունների, որպես «լծակների», «շարժափոկերի» և այլնի ավանդական կերպարը:

Հասկանալի է, որ նման մոտեցումը որոշակիորեն խեղաթյուրում էր արհեստակցական միությունների բուն իմաստը, դա անընդունելի է վերակառուցման և հասարակության դեմոկրատացման պայմաններում:

Փաստորեն կուսակցության և արհմիությունների հարաբերություններն արդեն փոխվում են: Անցյալ են դարձել այն ժամանակները, երբ նրանք անտրտունջ կատարում էին կուսակցական ղեկավարության ցուցումները, բազմաթիվ ձեռնարկություններում ադմինիստրացիայի յուրօրինակ հավելված էին:

Արհմիությունների վերակառուցումն սկսվեց ուշացումով: Ներկայումս այն թափ է հավաքում: Բայց թերացումը, անդամների հետ փոխգործակցելու հնացած մեթոդներին ու մեխանիզմներին հավատարիմ մնալը մի շարք դեպքերում հանգեցրել են այն բանին, որ բանվորները չեն հավատում իրենց օրինական շահերը պաշտպանելու արհեստակցական կոմիտեների ընդունակությանը: Եվ սոցիալական վիճակի սրման պահին առաջացան զուգահեռ կառուցվածքներ՝ գործադուլային կոմիտեներ, որոնք դարձյալ իշխանությունների և արհմիությունների անօգնական վիճակի հետևանքով դիմեցին իրենց պարտականությունների ընդլայնմանը:

Փաստորեն մենք Խորհրդային Միությունում գործ ունենք բանվորական շարժման վերածնման հետ: Սա բացառիկ լուրջ հարց է, որն ուղղակիորեն կապված է կուսակցության ճակատագրի հետ, այստեղ հարկավոր է հիմնավորապես կողմնորոշվել: Վարչահրամայական համակարգի տիրապետության տասնամյակները հանգեցրել են սեփականությունից և իշխանությունից բանվոր դասակարգի օտարացմանը: Եվ բանվորների մեջ կասկածներ են հայտնվել, թե առաջվա պես ուզում են իրենցով ձեռնածություն անել, փոխելով միայն տակտիկան, փոխհարաբերության ձևը:



Այստեղից էլ հենց կուսակցության նորացման խնդիրներից մեկն է մինչև վերջ հասցնել բանվոր դասակարգի հետ փոխհարաբերությունների նախկին հրամայական մեխանիզմի վերացումը, գործով ապացուցել, որ ԽՄԿԿ-ն պատրաստ է բոլոր մակարդակներով պաշտպանել նրա շահերը և արդարացի պահանջները, նրա անմիջական ներկայացուցիչներին պառլամենտական պայքարում և քաղաքական գործունեության մեջ աջակցել միութենական և տեղական մակարդակներով:

Աշխատավորների շահերը պաշտպանելու կուսակցության ընդունակության ըստուգման համար փորձաքար կլինի այն, թե կկարողանա՞ արդյոք նա հասնել այն բանին, որ մարդկանց, հատկապես ցածր վարձատրվողների կենսամակարդակը չիջնի շուկայական էկոնոմիկայի անցնելիս:

Այստեղ թե մասսաների հետ մշտական կենդանի կապ, թե բանիմացություն և թե քաղաքական արվեստ են հարկավոր, որպեսզի աշխատավորների տվյալ խավի, նրանց տվյալ ջոկատի շահերը պաշտպանելիս վնաս չհասցվի առաջընթացին, վերակառուցման դինամիկային:

Արհմիությունների հետ, մյուս բանվորական կազմակերպությունների հետ կուսակցության հարաբերությունները կկառուցվեն պարտնյորական, ընկերական հիմքի վրա: Բնավ չմիջամտելով արհմիությունների ներքին գործերին, կուսակցական կոմիտեները պետք է իրենց ամբողջ ազդեցությունն օգտագործեն նրանց հիմնավոր պահանջներն ու նախաձեռնությունները պաշտպանելու համար:

Մյուս մասսայական հասարակական կազմակերպություններից պետք է հատկապես խոսել կոմերիտմիության մասին: Դա կուսակցությանը ամենամոտ կանգնած, եթե կուզեք, գաղափարաքաղաքական առումով հարազատ կազմակերպությունն է:

Կոմերիտմիության մեր ընկերները հեշտ ժամանակներ չեն ապրում, ինչը կարելի էր դիտել ՀամԼԿԵՄ-ի վերջերս տեղի ունեցած համագումարում: Այնտեղ թեժ բանավեճերում էին վճռվում այն հարցերը, թե կոմերիտմիությունը պետք է լինի՞, թե՞ ոչ, իսկ եթե պետք է լինի, ապա կոնկրետ ինչպիսին. կկարողանա՞ նա արդյոք արմատապես նորանալ, ընդսմին պահպանելով իր ավանդույթների մեջ եղած լավագույնը:

Կոմերիտմիությունը, ինչպես որ կուսակցությունը, պետք է ըստ էության անցնի ինքնամաքրման, անցյալում իր ունեցած բացասական ամեն ինչի հետ կապերի խզման նույն փուլը: Չգիտեմ, կհամաձայնեն ինձ հետ կոմերիտականները, բայց իմ մեջ այն տպավորությունն է մնացել, որ այդ բանը լրիվ անել նրանց առայժմ չի հաջողվել: Սակայն կոմերիտմիության վերափոխման, վերակառուցման աշխատանքը սկսված է: Եվ գլխավոր հարցը, որ կոմերիտմիությունն արդեն իր համար վճռել է, այն է, որ նա գաղափարական և քաղաքական առումով օրգանապես կապված է մնում ԽՄԿԿ-ի հետ: Դա կուսակցության համար սկզբունքորեն կարևոր է:

Իհարկե, ներկա պայմաններում մենք պետք է հրաժարվենք կոմերիտմիության մեջ ամբողջ երիտասարդության մենաշնորհ ներկայացուցչին տեսնելու սովորությունից: Նոր կուսակցությունների հետ միասին ակներևաբար կստեղծվեն նաև երիտասարդական կազմակերպություններ, տեղի կունենա երիտասարդության համար գաղափարական ու քաղաքական պայքար: Մենք, իհարկե, պետք է ըստ ամենայնի աջակցություն ցույց տանք կոմերիտական կազմակերպություններին, բայց նրանց ինքնուրույնության լիակատար հարգման պայմանով: Հին ձևով գործն առաջ տանելը պարզապես կնշանակեր կորցնել երիտասարդ սերնդին:

Մյուս հասարակական կազմակերպությունների հետ նորացվող ԽՄԿԿ-ի հարաբերությունների հարցերը մեզ դուրս են բերում ավելի լայն թեմայի՝ կուսակցության ժամանակակից սոցիալական բազայի թեմային: Նախահամագումարյան բանավեճում կարելի էր լսել. թող ԽՄԿԿ-ն որոշի, թե ինքը ում կուսակցությունն է: Իբր հասարակության բոլոր խավերի շահերն արտահայտելու հավակնությունները սնանկ են, քանի որ այդ շահերը բնավ միշտ չէ, որ զուգադիպում են, իսկ շատ դեպքերում նաև հակասում են իրար:

Սա լուրջ փաստարկ է: Իսկապես, անցյալում մեզ մոտ ազգային շահերի տարբերակումը, անհամապատասխանությունը, պարզապես ժխտվում էին: Հասարակության բարոյաքաղաքական միասնության կարգախոսը ասես վերացնում էր սոցիալական պահանջմունքների և ձգտումների իրական բազմազանությունը տեսնելու անհրաժեշտությունը: Այսօր մենք ոչ միայն ընդունում ենք այդ փաստը, այլև ստեղծում ենք մի այնպիսի քաղաքական համակարգ, որի շրջանակներում հնարավոր է զանազան շահերի համաձայնեցում:

Միաժամանակ ակներև է, որ խորհրդային մարդիկ պրոֆեսիոնալ, ազգային տարիքային և այլ յուրահատուկ պահանջմունքների հետ մեկտեղ ունեն ընդհանուր շահեր, որոնք միլիոնավոր անհատների միաձուլում են մի ժողովրդի մեջ: Մենք վերակառուցման նվիրական իմաստը տեսնում ենք այն բանում, որ դեմոկրատացման միջոցով բացահայտենք ամբողջ երկրի վիթխարի պոտենցիալը և այդ հիման վրա ապահովենք ժողովրդի շահերի բավարարումը զարգացած ժամանակակից պետությունների մակարդակով:

Մենք վերակառուցման կուսակցություն ենք, ու հետևաբար ԽՄԿԿ-ն այսօր հանդես է գալիս որպես համաժողովրդական քաղաքական կազմակերպություն:

Ուզում եմ ընդգծել. խոսքը բնավ էլ այն մասին չէ, որ մենաշնորհ իրավունքի ոչ պիտանի, իրենց դարն ապրած հավակնությունները վերածնվեն նոր կարգախոսներով: ԽՄԿԿ-ն՝ որպես սոցիալիստական ընտրության կուսակցություն, արտահայտելով ամբողջ ժողովրդի շահերը, այսուհետև էլ կհենվի բանվոր դասակարգի, գյուղացիության ու մտավորականության վրա:

Արմատական վերակառուցման կարիք ունի կուսակցության վերաբերմունքը կանանց նկատմամբ: Մենք պետք է ընդունենք, որ մեզ մոտ կանանց հարցը դասվում է ամենասուր հարցերի թվին: Բոլոր կարգախոսներին հակառակ, որոնք բավական շատ են առաջ քաշվել, եթե ասելու լինենք «վերակառուցողական ժամանակների» մասին, սկսած ԽՄԿԿ XXVII համագումարից, կանանց աշխատանքի ու կենցաղի պայմանները զգալի ուշադրության և արմատական բարելավման կարիք ունեն: Դա գլխավոր հարցերից մեկն է: Առանձնապես անհանդուրժելի է կանանց խիստ աննշան ներկայությունը քաղաքական կյանքում: Կարծում եմ, որ մենք բոլորս պետք է պարզապես ամաչենք, երբ տեսնում ենք, որ այժմ շատ երկրներում կանայք ակտիվորեն մասնակցում են մեծ քաղաքականությանը, իսկ եկեք նայենք այս դահլիճին՝ քանի՞ պատվիրակուհիներ կան այստեղ: Սպասենք մանդատային հանձնաժողովի նախագահի զեկուցմանը այս հարցում լիակատար պարզություն մտցնելու համար: Իսկ ինչքա՞ն կանայք կան կառավարության մեջ: Մեզ մոտ այդ գործը վերին աստիճանի բարձիթողի վիճակում է, և վերջին ժամանակներս շատ քիչ բան է փոխվել: Գուցե այս համագումարում ռեալ քայլեր անենք, որ թե Կենտրոնական կոմիտեում, թե քաղբյուրոյում կանայք ներկայացված լինեն: Բուն կուսակցության ֆունկցիաների փոփոխումը հաշվի առնելով՝ կարելի է մտածել նաև այն մասին, որ Կենտրոնական կոմիտեի ապարատում լինի կանանց շրջանում տարվող աշխատանքի բաժին: Կարծում եմ, կանայք «կողմ են» դրան, նրանք ծափահարում են:

Կարելի է չկասկածել, որ հասարակության դեմոկրատացման առնչությամբ ծագող նոր երևույթներից մեկը կդառնա կանանց կազմակերպությունների ամրապնդումը: Մենք պետք է ամեն կերպ ողջունենք այդ գործընթացը և աջակցություն ցույց տանք դրան: Տղամարդկանց պատվի գործն է իրենցից կախված ամեն ինչ անել կանանց վիճակը թեթևացնելու համար՝ ահա թե ինչ առումով է դրվում տղամարդու պատվի հարցը: Բայց շատ բան կարող են անել նաև կանայք իրենք, եթե կարողանան կազմակերպվել:

Կուսակցության ևս մի կարևոր սոցիալական հենարանի՝ պատերազմի և աշխատանքի վետերանների մասին: ԽՄԿԿ-ն այդ միջավայրում պահպանում է ամուր դիրքերը: Եվ մենք պետք է թանկ գնահատենք վետերանների աջակցությունը, նրանց ակտիվորեն մասնակից դարձնենք կուսակցական և առհասարակ քաղաքական կյանքին: Այդ մարդիկ, որոնք իրենց հայրենասիրությունը ապացուցել են ամենածանր ժամանակներում, որպես կանոն, հաստատ քաղաքացիական դիրքորոշում ունեն:

Միութենական հանրապետությունների կոմունիստական կուսակցությունների մասին: Կարծում եմ, համագումարի պատվիրակները կհամաձայնեն, որ սա այժմ ամենահրատապ հարցն է: Եվ ոչ միայն կազմակերպական, քանի որ շոշափում է մեր կուսակցության՝ որպես ինտերնացիոնալիստական կազմակերպության, բուն էու-



թյունը: Որպես այդպիսին կուսակցությունը ստեղծվել է Լենինի կողմից, որպես այդպիսին տասնամյակներ շարունակ կատարել է մեր բազմազգ պետության ցեմենտող ուժի դերը: Եվ սկզբունքորեն կարևոր է, որ նրա հենց այդ բնույթը պահպանվի, այլապես թե երկիրը, թե պետությունը և թե ինքը՝ կուսակցությունը մեծ կորուստներ կկրեն, գուցեև անդառնալի կորուստներ:

Ծագած պրոբլեմների լուծման նկատմամբ սկզբունքային մոտեցումը, հավանաբար, ոչ մեկի մեջ կասկած չի առաջացնում: Մենք ելնում ենք այն բանից, որ ԽՄԿԿ-ի ամբողջականությունը լիովին զուգակցվում է միութենական հանրապետությունների և ինքնավար կազմավորումների կոմկուսների առավելագույն ինքնուրույնության հետ, բնավ չի սահմանափակում ազգային, պատմական, տեղական և մյուս առանձնահատկությունները հաշվի առնելու, կադրային, ֆինանսական և իրենց գործունեության մյուս հարցերը սեփական հայեցողությամբ լուծելու նրանց հնարավորությունները: Բայց քանի որ այդ պրոբլեմները միահյուսվում են մեր Միության վերափոխման գործընթացի հետ, ապա այստեղ կան զանազան միտումներ, ընդհուպ մինչև կուսակցության ֆեդերալացումը և կուսակցությունից անջատվելը: Դուք գիտեք մերձբալթյան հանրապետություններում տիրող իրավիճակը: Չնայած Կենտրոնական կոմիտեի ձեռնարկած բոլոր միջոցներին, մեզ չհաջողվեց խանգարել կուսակցության տարանջատմանը ԽՄԿԿ-ի պլատֆորմի վրա մնացած և ԽՄԿԿ-ից դուրս եկած կուսակցությունների: Դրա հետևանքով հանրապետություններում կոմունիստական շարժումը խիստ թուլացավ, այստեղ իշխանության գլուխ անցան այլ քաղաքական ուժեր:

Եթե մենք հիմա մեզ թույլ տանք ներքաշվել սահմանազատման, պառակտումների, տարանջատումների մեջ, ապա դա պարտության կմատնի կոմունիստական շարժումը, կթուլացնի այն և հնարավորություններ կստեղծի մյուս քաղաքական ուժերի դիրքերի ուժեղացման համար: Մենք բոլորս պետք է դաս քաղենք այդ դեպքերից, ջանանք գտնել նոր մոտեցումներ ԽՄԿԿ-ի ինտերնացիոնալ ամբողջականության ամրապնդման, չեմ բացառում՝ նաև այդ հանրապետությունների կոմկուսների ամրապնդման նկատմամբ:

Կանոնադրության նախագծի մեջ արդեն նախատեսված է ամբողջ կուսակցության շահերի հետ հանրապետական կոմկուսների շահերի համաձայնեցման մի շարք մեխանիզմների ստեղծում: Սկզբունքային քաղաքական որոշումներ ընդունելիս պետք է մտածել նաև համապատասխան ընթացակարգերի մասին: Կարևոր է, որ ոչ մի կոմկուս վեր չկանգնի մյուսից, հնարավորություն չունենա ուրիշներին պարտադրելու իր կամքը:

Մեր համագումարի շատ պատվիրակներ հնարավորություն ունեցան մասնակցելու, իսկ ոմանք էլ՝ հետևելու, թե ինչպես էր ընթանում այն կոնֆերանսի աշխատանքը, որն իրեն հայտարարեց Ռուսաստանի Ֆեդերացիայի կոմկուսի հիմնադիր համագումար:

Կոնֆերանսի ուշադրության կենտրոնում կոմունիստների մտահոգությունն էր երկրի բախտի, հանրապետության դժվարին պրոբլեմների առթիվ, ձգտումը՝ նոր ստեղծվող հանրապետական կուսակցության հնարավորություններն օգտագործել Ռուսաստանի, նրա բազմաթիվ ժողովուրդների վերածնմանը, մեր բազմազգ պետության ամրապնդմանը օգնելու համար: Ինձ կարևոր է թվում նշել համագումարի փաստաթղթերում արձանագրված Ռուսաստանի կոմունիստների կամքը՝ նպաստելու ԽՄԿԿ-ի որպես միասնական ընդհանուր միութենական կուսակցության, ամրապնդմանը, հավասար իրավունքներով համագործակցելու մյուս հանրապետությունների կոմկուսների հետ: Կարծում եմ, մենք կարող ենք ողջունել ռուսաստանցի կոմունիստների նման սկզբունքային դիրքորոշումը:

Իսկ ինչ վերաբերում է ԽՄԿԿ-ի բաղկացուցիչ մասերի փոխգործակցությանը, ապա, վստահ եմ, մենք ի վիճակի ենք լուծելու բոլոր խնդիրները, եթե հիշենք գլխավորը. կոմունիստները միասին հզոր քաղաքական ուժ են կազմում, բայց նրանք դա կկորցնեն, եթե ցրվեն ըստ ազգային բնակարանների:

Տերիտորիա՞լ, թե՞ արտադրական սկզբունքը: Այն հարցի պատասխանը, թե արտադրության մեջ կուսակցական կազմակերպություններ պետք է լինեն թե ոչ, միանշանակ է՝ պետք է լինեն: Մեր կուսակցությունը պատմականորեն գործել է

թանվորական կոլեկտիվների բազայի վրա, այստեղ են նրա արմատները, նրա ակունքները:

ԽՄԿԿ-ի արտադրական կառուցվածքի սկզբունքը համապատասխանում է ընտեղծված կայուն ավանդույթին, և մենք հիմքեր չենք տեսնում դրանից նահանջելու: Բացի դրանից, հենց կոմունիստներին է պատկանում իրենց կազմակերպության ձևերը որոշելու իրավունքը: Սա, անշուշտ, լրիվ վերաբերում է նաև մյուս կուսակցությունների անդամներին:

Արտահայտվելով ԽՄԿԿ-ի կառուցման արտադրական սկզբունքի պահպանման օգտին, հարկավոր է միաժամանակ բարելավել կուսակցական կազմակերպությունների աշխատանքը ըստ բնակության վայրի: Տարածքային սկզբունքը, պետք է ընդունել, վատ է յուրացված կուսակցության կողմից: Այդ բանը ցույց տվեցին մանավորապես ժողովրդական դեպուտատների ընտրությունները, այն է՝ նման խոշոր քաղաքական կամպանիաների ընթացքում քաղաքական աշխատանքի կենտրոնը տեղափոխվում է:

Այժմ բավական սրությամբ է առաջադրվում նաև մի ուրիշ հարց. պետական կառավարման մարմինների, դատարանի, դատախազության, մյուս իրավապահ մարմինների, ինչպես նաև բանակի ապաքաղաքականացման հարցը: Այս առթիվ մեր դիրքը որոշվում է նրանով, որ միավորվելու իրավունքը դասվում է անկապտելի քաղաքական ազատությունների թվին: Ոչ ոք չի կարող կուսակցության անդամներին արգելել ստեղծելու իրենց բջիջները ձեռնարկություններում, հիմնարկներում և այլն:

Դժվար է պատկերացնել ապաքաղաքականացված պետական մարմիններ, դժվար է աշխարհում գտնել մի բանակ, որտեղ չգործեին զինվորների ու սպաների բարոյական ոգին պահպանելու, նրանց դաստիարակելու մարմիններ: Այստեղ մենք նույնպես բացառիկության հավակնություն չունենք՝ դա այն բոլոր կուսակցությունների իրավունքն է, որոնք մեզ մոտ կգրանցվեն օրինական հիման վրա: Ահա մեր մոտեցումը:

Դեմոկրատական ցենտրալիզմի մասին: Նախորդ տարիներին լենինյան այս սկզբունքը փաստորեն փոխարինված էր բյուրոկրատական ցենտրալիզմով: Դրան ընդմիշտ վերջ է տրված: Վերակառուցելով կուսակցությունը, մենք պայմաններ ենք ստեղծում ներկուսակցական դեմոկրատիայի, ինքնակառավարման ըստ ամենայնի զարգացման համար, գիտակցական կարգապահության կամավոր ու խելամիտ պահպանմամբ հանդերձ ղեկավար մարմինների գործունեության նկատմամբ կոմունիստների վերահսկողության համար:

Այժմ կուսակցության մեջ ուժեղ են տրամադրությունները հօգուտ այն բանի, որ այս սկզբունքը բացառվի կանոնադրությունից, քանզի այն վարկաբեկված է ամբողջ նախորդ պրակտիկայով: Բայց շատերը արտահայտվում են դրա պահպանման օգտին, դրանից հրաժարվելու մեջ տեսնելով կուսակցությունը բանավեճի ակումբ դարձնելու վտանգ: Կարծում եմ, առաջին դեպքում ընկերները ուզում են հրաժեշտ տալ այն տերմինաբանությանը, որի հետ կապված է նախորդ պրակտիկան: Սակայն իսկական կոմունիստներից ոչ մեկը չի ուզում մեր կուսակցությունը վերածել տձև կազմակերպության, որտեղ ամեն ինչ կարող է խեղդվել բանավեճերի մեջ, և նա անընդունակ կլինի լուծելու այն վիթխարի խնդիրները, որ կանգնած են իր՝ որպես քաղաքական կուսակցության առջև:

Մի խոսքով, համագումարը պետք է ընտրություն կատարի: Եկեք քննարկենք այս հարցը, այն քննության առնելով ըստ էության: Այդ առթիվ առաջարկություններ կան թե ծրագրային հայտարարության մեջ և թե կանոնադրության նախագծում: Կանոնադրության մեջ պետք է արձանագրվեն այնպիսի սկզբունքներ, որոնք երաշխավորեին թե՛ դեմոկրատիզմը և թե՛ կուսակցության գործունեությունը, մեծամասնության կողմից ընդունված որոշումների պարտադիր լինելը ամենքի համար:

Սրա հետ է կապված նաև մի ուրիշ սկզբունքային հարց՝ ֆրակցիաների հարցը: Այժմ դեմոկրատիայի և ներկուսակցական հրապարակայնության, բացախոսության զարգացման մեջ մենք հսկայական քայլ ենք արել: Դատապարտված են այլախոհությունը ճնշելու ամեն տեսակ փորձերը: Բայց կա մի շեմ, որին ոտք դնելը կնշանակեր հնձել կուսակցությունը: Դա ֆրակցիաների ստեղծումն է իրենց առանձնահատուկ ներքին կարգապահությամբ:



Մշտում եմ. խոսելով այդ կարգի ֆրակցիաների ստեղծման անթույլատրելիության մասին, մենք նկատի ունենք, որ կուսակցության այն անդամները, որոնք իրենց, մեծամասնության դիրքորոշումից տարբեր տեսակետն ունեն այս կամ այն հարցի վերաբերյալ, կարող են ազատորեն քննարկել ու պրոպագանդել իրենց հայացքները, հրապարակայնորեն հայտարարել դրանք, ընդհուպ մինչև կուսակցական համագումարները: Եկեք ցույց տանք, որ մեզ մոտ արդեն ըմբռնում կա այդ առթիվ:

Կուսակցական մասսաների իշխանության մասին: Կուսակցության ռեֆորմի էությունը կուսակցական մասսաների գործնական իշխանության, կուսակցության քաղաքականության վրա կոմունիստների ռեալ ազդեցության ապահովումն է: Դրա համար անհրաժեշտ է արմատապես փոխել սկզբնական կուսակցական կազմակերպությունների կանոնադրությունը:

ԽՄԿԿ-ի նոր կանոնադրության նախագծում փաստորեն հաշվի է առնված այն ամենը, ինչ այդ առթիվ առաջարկվում էր նախահամագումարյան բանավեճում: Սահմանվում է, որ դրանք բոլորը ինքնուրույն են իրենց ներքին կյանքի կառուցման մեջ: Նրանց որոշումները, եթե դրանք չեն հակասում ԽՄԿԿ-ի ծրագրային նպատակներին և նրա կանոնադրության նորմաներին, չեն կարող չեղյալ հայտարարվել վերադաս մարմինների կողմից, բացառությամբ անհատական գործերի վերաբերյալ որոշումների: Վերացվում է սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության կանոնակարգումը: Նրանց տնօրինությանն է հանձնվում ԽՄԿԿ-ի մեջ ընդունումը, նրանք իրավունք են ստանում վերջնական գնահատական տալու կուսհաշվառման մեջ գտնվող ամեն մի կոմունիստի գործունեությանը:

Սկզբունքորեն նոր ձևով են լուծվում ֆինանսական ապահովման հարցերը: Սկզբնական կուսկազմակերպությունները կարող են իրենք լուծել իրենց կառուցվածքի, ծրագրի և գործունեության ձևերի հարցերը:

Հարկավոր է ավելի հաճախակի կոմունիստների քննարկմանը ներկայացնել կարևոր հարցերի վերաբերյալ կուսակցական որոշումների նախագծերը, կանոնավոր կերպով անցկացնել բանավեճեր: Հարկավոր է անհապաղ մշակել կուսակցական հանրաքվեների անցկացման կարգ՝ ինչպես ԽՄԿԿ-ի մասշտաբով, այնպես էլ նրա կազմակերպությունների մասշտաբով, կոմունիստների կամքը արագորեն ի հայտ բերելու համար:

Անհրաժեշտ է ամրապնդել կուսակցության մեջ ընտրական համակարգի դեմոկրատական հիմունքները: ԽՄԿԿ-ի համագումարի, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարների, կուսակցական կոնֆերանսների պատվիրակների ուղղակի ընտրությունների առաջին փորձը մենք ունենք: Նախահամագումարյան ժամանակաշրջանում տարածում ստացան կուսակցական քարտուղարների ընտրությունները անմիջականորեն ժողովներում, կոնֆերանսներում, համագումարներում: Նորմալ դարձավ այլընտրականությունը: Այդ ամբողջ փորձը ուշադիր և հանգիստ ուսումնասիրություն է պահանջում:

Կարևոր քայլ է արված կուսակցության դեմոկրատական զարգացման ուղղությամբ: Բայց սխալ կլիներ աչք փակել այն բանի վրա, որ ընտրական տարերքը քնավ էլ բարեհաճ չեղավ բանվորների, գյուղացիների, կանանց, երիտասարդ կոմունիստների նկատմամբ: Ակներևաբար, մենք պետք է ամենայն ուշադրությամբ վերաբերվենք վերադաս կուսակցական մարմիններում սկզբնական մյուս կուսկազմակերպությունների ուղղակի ներկայացուցչություն մտցնելու առաջարկի իմաստավորմանը: Եկեք քննարկենք:

Առանձնակի հարց է կուսակցության կենտրոնական մարմինների կառուցվածքը: Այդ առթիվ առաջարկները, որոնք շարադրված են ծրագրային հայտարարության և կանոնադրության նախագծերում, մեծ առարկությունների չհանդիպեցին, թեև նման առարկություններ կան: Այն կարծիքն է հայտնվում, որ թույլ են հաշվի առնըված կուսակցական շինարարության նոր մոմենտները՝ կապված միութենական հանրապետությունների կոմկուսների ինքնուրույնության հետ, անբավարար օպերատիվ մարմնի տեսք ունի Կենտկոմի նախագահությունը: Այս հարցը բավական մանրամասնորեն քննարկվեց նախորդ օրը պատվիրակությունների ներկայացուցիչների խորհրդում, և ես նրանց հանձնարարությամբ հաղորդում եմ, որ ինչպես ընկերներն են գտնում, կոմունիստների մեծ մասը, այնուամենայնիվ, կողմ չէ նախագահության

նախագահի, նրա տեղակալների պաշտոններ մտցնելուն, այլ կողմ է քաղբյուրոյի և համագումարի կողմից ընտրվող գլխավոր քարտուղարի պոստի պահպանմանը, կողմ է Կենտկոմի գլխավոր քարտուղարի տեղակալի՝ որպես կուսակցական ղեկավարության մեջ երկրորդ դեմքի, ընտրությանը:

Ըստ իս, ես ճշտիվ զեկուցում եմ պատվիրակությունների ներկայացուցիչների խորհրդի կարծիքը: Մենք պետք է քննարկենք և լուծենք կուսակցության համար այս կարևոր հարցերը:

Կուսակցության Կենտկոմը համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում: ԽՄԿԿ Կենտկոմի ներկա կազմին հարկ եղավ լուծել վերակառուցման խնդիրները այն պայմաններում, երբ դեպքերի ընթացքը ստիպում էր շտապ փնտրել նոր մոտեցումներ, վերագնահատել այն, ինչ թվում է, արդեն իմաստավորված ու պարզ էր: Երբ այսօր կարդում ես կուսակցության XXVII համագումարի նյութերը, տեսնում ես, որ կյանքը շատ է առաջ անցել ամենահամարձակ գաղափարներից, որոնց մենք այն ժամանակ ձեզ հետ ընդունել էինք: Կենտկոմը անցած ժամանակաշրջանում բավական լարված է աշխատել: Անցկացվել է 21 պլենում՝ կրկնապատիկ շատ, քան նախատեսված է կանոնադրությամբ հնգամյա ժամկետի համար, իսկ մենք, բացի դրանից, այդ ժամկետը չենք էլ ավարտել: Պլենումներից փաստորեն յուրաքանչյուրը սկզբունքային, ես կասեի, փուլային նշանակություն է ունեցել: XXVII համագումարից հետո անցած տարիներին պլենումներում ոչ միայն մթնոլորտը, այլ քննարկվող հարցերի թեմատիկան, բանավեճերի բովանդակությունը արմատապես փոխել են նաև Կենտրոնական կոմիտեի գործունեության բնույթը: Բոլոր վերջին պլենումներում անկեղծ, շիտակ, հաճախ անկողմնակալ խոսակցություն է տեղի ունեցել:

Ուզում եմ ընդգծել, քանի որ այս առթիվ գոյություն ունեն տարբեր գնահատականներ, որ կարծիքների ամբողջ բազմազանությամբ, դիրքերի բախման և նույնիսկ տարաձայնություններով հանդերձ, բոլոր սկզբունքային հարցերի վերաբերյալ որոշումները պլենումներում ընդունվել են միահամուռ կերպով, և մենք անշեղորեն, քայլ առ քայլ առաջ ենք գնացել: Դա հենց վկայում է այն մասին, որ Կենտրոնական կոմիտեն այն ամենով հանդերձ, ինչի համար նա քննադատվում է, շատ բան է արել, որպեսզի առաջ մղի վերակառուցման քաղաքականությունը, հեղափոխական բարեփոխումների գործընթացը:

Հաշվի առնելով մեր հասարակության զարգացման շատ բարդ ժամանակաշրջանը, այն պրոբլեմների նորությունն ու մասշտաբայնությունը, որ հարկ զգացվեց լուծել այդ ընթացքում, իրադարձությունների որոշակի դրամատիզմը, մենք ամենայն պատասխանատվությամբ կարող ենք ասել, որ ԽՄԿԿ XXVII համագումարի կողմից ընտրված ներկայիս Կենտկոմը հիմնականի և գլխավորի գծով կատարել է իր վրա դրված խնդիրները:

Արդյոք դա, ընկերներ, վերացնո՞ւմ է այն ամենը, ինչ ասվեց զեկուցման ընթացքում՝ որ այդ Կենտրոնական կոմիտեն վրիպումներ է թույլ տվել, ոչ բոլոր դեպքերում է արձագանքել կյանքի պահանջներին, ժամանակին գտնել այն բանի ճիշտ պատասխանները, ինչ առաջ էր քաշում մեր փոփոխուն ժամանակը: Ոչ, իհարկե: Դա պետք է վերագրել կուսակցության ղեկավարության, ասենք նաև Կենտկոմի շատ անդամների գործունեության թերություններին, քանի որ տեղերում նրանց աշխատանքը նույնպես դարձել է կոմունիստների սուր քննադատության առարկա:

Պատվիրակները կարող են արտահայտել իրենց դատողությունները ամբողջությամբ վերցրած Կենտկոմի, իրենց զբաղեցրած պաշտոններում նրա առանձին անդամների աշխատանքի մասին: Բացի այդ, ինչպես արդեն ասացի, դուք հնարավորություն կունենաք քաղբյուրոյի անդամների աշխատանքի մասին ձեր կարծիքը կազմելու նրանց ելույթները լսելուց հետո: Ես կկամենայի միայն ընդգծել, որ Կենտկոմի և ԽՄԿԿ-ի ղեկավարության անդամների քաղաքական գործունեության արդյունքները պետք է գնահատել վերակառուցման մասշտաբներով և հեղափոխական բարեփոխումների մեջ նրանց ներդրած ավանդով: Կենտկոմը ընդունակ եղավ առաջարկել բարեփոխումների քաղաքականություն և հսկայական աշխատանք կատարել դրանց իրականացման ուղղությամբ: Կրկնում եմ. սա չի վերացնում այն, որ կարելի էր զգալիորեն ավելի շատ բան անել և դրանով իսկ հասարակությանը ազատել բացասական շատ երևույթներից, որոնք հանգեցրին սոցիալական լարվածության և այժմ ստիպում են ելք որոնել:



Մեզանից շատերի հասցեին քննադատական քիչ դիտողություններ չեն արվել, և հավանաբար դեռ կարվեն համագումարում:

Չէ որ քննադատության մեջ դրսևորվում են թե բանավեճ, թե դիրքերի բախում, որոնք արտացոլում են կուսակցության և հասարակության վիճակը: Եվ միայն կյանքը կարող է վերջնականորեն լիակատար պարզություն մտցնել այս կամ այն բանավեճի մեջ:

Մենք պետք է այսուհետև էլ կուսակցության բոլոր օղակներում պահպանենք բանավեճերի ոգին, հոգ տանենք դրանց արգասավորության մասին և, որ առանձնապես կարևոր է, այն մասին, ինչը մեզ պակասում էր այս տարիներին կուսակցական ընկերականության, կուսակցական էթիկայի մասին:

Հարկավոր է տիրապետել քաղաքական կուլտուրային, քանզի միայն այդ պայմանով կարելի է պրոբլեմների քննարկման կոնստրուկտիվության և անհրաժեշտ համատեղ որոշումների մշակման հույս տածել: Եվ առհասարակ պետք է, որ մեր համաժողովներում, մանավանդ այսպիսի մակարդակով, փաստարկների կամ վերլուծության տվյալների բացակայությունը չքողվի ու չփոխարինվի սուր արտահայտություններով:

Ես վերջացնում եմ զեկուցումը:

Մեր առջև, ընկերներ, շատ դժվարին խնդիրներ են կանգնած, և դրանց լուծումը, ճգնաժամային վիճակից ելքը կուսակցությունը տեսնում է միայն առջևում, միայն հետագա դեմոկրատացման և վերակառուցման խորացման ճանապարհին:

---

*Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության XXVIII համագումարի*

# *ԲԱՆԱՁԵՎԸ*

## ԽՄԿԿ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ ԽՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՆԵԼԻՔՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Համագումարը, լսելով և քննարկելով կուսակցության Կենտրոնական կոմիտեի քաղաքական հաշվետվությունը (զեկուցող՝ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչով), նշում է, որ կուսակցության XXVII և XXVIII համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում նոր փոփոխություններ են տեղի ունեցել հասարակության կյանքում։ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի քաղբյուրոն՝ որպես քաղաքական ղեկավարման կոլեկտիվ մարմիններ, կուսակցությունը, բոլոր առաջադեմ ուժերին նպատակամղել են երկրի հեղափոխական շրջադարձին դեպի հումանիզմ, դեմոկրատիա, սոցիալական արդարություն։

Հաղթահարվում է ստալինյան տոտալիտար համակարգը, որը հսկայական վնաս հասցրեց երկրին, ժողովրդին, կուսակցությանը, բուն սոցիալիստական գաղափարին։ Ձևավորվում է ազատ քաղաքացիների հասարակություն՝ հիմնված սոցիալիստական արժեքների վրա։

Արմատապես վերափոխվում է ամբողջ քաղաքական վերնաշենքը, ամրապնդվում է իսկական դեմոկրատիան՝ մարդու իրավունքների հաստատումով, ազատ ընտրություններով, բազմակուսակցականությամբ։

Գերկենտրոնացված պետությունը վերափոխվում է իրոք դաշնակցային պետության՝ հիմնված ժողովուրդների ինքնորոշման և կամավոր միավորման վրա։

Գաղափարախոսական թելադրանքը իր տեղը զիջում է ազատամտությանն ու հրապարակայնությանը, ինֆորմացիոն բացախոսությանը։

Ապամոնտաժվում են պետական մենաշնորհային արտադրական հարաբերությունները, որոնք աշխատավորներին խորթացնում էին սեփականությունից և իրենց աշխատանքի արդյունքներից։

Պայմաններ են ստեղծվում սոցիալիստական արտադրողների ազատ մրցակցության համար։

Այսպիսով, վերակառուցման ժամանակաշրջանում ընդունված կուսակցության որոշումները հնարավորություն ստեղծեցին ժողովրդապետության վերածնման, դեմոկրատական պետության իրավական հիմունքների մշակման, նոր քաղաքական մտածողության ձևավորման, տնտեսական ռեֆորմի իրականացման պրակտիկ գործողությունների համար։ Այդ ամենը քաղաքական կյանքի մեջ ներգրավում է միլիոնավոր մարդկանց, նպաստում վերակառուցման անշրջելիությանը։

Համագումարն ընդգծում է, որ կուսակցության բախտը, նրա պատմական հեռանկարները ուղղակի կապված են վերակառուցման նպատակների իրագործման, ժողովրդի կյանքի բարելավման հետ։ Համագումարը հանդես է գալիս ԽՄԿԿ-ի վճռական նորացման օգտին, դոգմատիզմից ազատվելու, մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքի արվեստին, ճշմարտության ուժով, փաստարկումներով մարդկանց գրավելու, մյուս հասարակական-քաղաքական ուժերի հետ կոնստրուկտիվ կերպով համագործակցելու, իսկ որ գլխավորն է՝ կոնկրետ գործերով մարդկանց գրավելու կարողությանը տիրապետելու օգտին։



Համագումարը հայտարարում է. ԽՄԿԿ-ն՝ համախոհների կամավոր միությունը, մնում է որպես սոցիալիստական ընտրության և կոմունիստական հեռանկարի կուսակցություն, իր քաղաքականությամբ արտահայտում և պաշտպանում է բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության, ամբողջ աշխատավոր ժողովրդի շահերը։ Դա անբաժանելի է համամարդկային, մարդասիրական արժեքներին, սոցիալիստական արդարության նրա հավատարմությունից։ Կոմունիստների մեծ մասը ազնվորեն է ծառայել ու ծառայում է ժողովրդին։ Նրանք պատասխանատվություն չեն կրում Ստալինի ու նրա հանցակիցների ոճրագործությունների համար, լճացման տարիներին քաղաքական ղեկավարության թույլ տված սխալների համար։

Համագումարը հանդես է գալիս ավտորիտար մտածողության դեմ, Մարքսի, Էնգելսի և Լենինի ժառանգության, սոցիալիստական տեսության ստեղծագործական զարգացման օգտին, 20-րդ դարի պատմական փորձի, հենց ԽՄԿԿ-ի գործունեության, համաշխարհային հասարակական մտքի նվաճումների խոր իմաստավորման օգտին։

ԽՄԿԿ-ն առաջնային նշանակություն է տալիս գիտության, կրթության, մշակույթի մեջ արտահայտված՝ հասարակության ինտելեկտուալ հարստության բազմապատկմանը։

Համագումարը վճռականորեն դատապարտում է հարձակումները Վ. Ի. Լենինի անձի հասցեին։ Զրպարտությունից, անպատվումից, ինչպես նաև ձևական պատիվներից ու փառաբանումից նրա՝ որպես քաղաքագետի ու մտածողի, պաշտպանությունը յուրաքանչյուր կոմունիստի, ազնիվ մարդու պարտքն է։

Համագումարը վճռաբար դեմ է սոցիալիզմի ձևախեղումների և կուսակցության վրիպումների քննադատության քողի տակ հասարակության մեջ հակակոմունիզմ ու հակախորհրդիզմ, էքստրեմիզմ արմատավորելու փորձերին, իր հաստատ մտադրությունն է հայտնում բոլոր օրինական միջոցներով հականերգործել կուսակցությանը տնտեսապես կամ քաղաքականապես նեղելու փորձերին։

ԽՄԿԿ-ն հետևողական ինտերնացիոնալիստների կուսակցություն է, զգայուն՝ ազգային շահերի, պահանջմունքների և սովորույթների նկատմամբ, անհաշտ՝ նացիոնալիզմի, շովինիզմի և ռասիզմի նկատմամբ, հետադիմական գաղափարախոսության բոլոր դրսևորումների նկատմամբ։

Համագումարը կենսական խնդիր է համարում գործնականորեն ապահովել կուսակցական մասսաների իշխանությունը ԽՄԿԿ-ում, յուրաքանչյուր կոմունիստի ռեալ հնարավորությունը մասնակցելու կուսակցության քաղաքականության մշակմանն ու իրացմանը, ապահովելու սկզբնական կազմակերպությունների դերի արմատական բարձրացում։ ԽՄԿԿ-ի գաղափարաքաղաքական ամբողջականությունը հիմնվում է կուսակցական կազմակերպությունների ինքնակառավարման, ԽՄԿԿ-ի կազմում միութենական հանրապետությունների կոմկուսների ինքնուրույնության սկզբունքների վրա։

Համագումարը վերին աստիճանի կարևոր է համարում, որ կուսակցական կազմակերպությունները ակտիվորեն մասնակցեն երկրում վերածնվող բանվորական ու գյուղացիական շարժմանը։

Բազմակուսակցականության պայմաններում ԽՄԿԿ-ն պատրաստ է բացեիբաց մրցել ու համագործակցել մյուս կուսակցությունների ու շարժումների հետ օրենքի հիման վրա, այդ թվում՝ ընտրություններում և պառլամենտական գործունեության մեջ։

Համագումարը հավաստում է. վերակառուցման և հեղափոխական նորացման ԽՄԿԿ-ի կուրսը համապատասխանում է երկրի արմատական շահերին։

Դրա հետ մեկտեղ, այդ կուրսն իրականացնելիս ԽՄԿԿ Կենտկոմը, Կենտկոմի քաղբյուրոն, քարտուղարությունը հարկ եղածին պես հաշվի չեն առել ձեռնարկված կոնկրետ քայլերի տնտեսական, սոցիալական ու բարոյական հետևանքները։ Հարբեցողության դեմ պայքար մղելու կամպանիան, կոոպերատիվների կազմակերպման պրակտիկան, անցումը ռեգիոնալ տնտհաշվարկի ու ձեռնարկությունների ինքնուրույնության և մի շարք ուրիշ խոշոր ձեռնարկումներ անցկացվել են անսիստեմ, առանց կուսակցական կազմակերպություններում դրանց նախնական հիմնավոր մշակման։ Դա իջեցրել է կարևոր ու պետքական միջոցառումների հատույցը կամ նույնիսկ հանգեցրել հակառակ արդյունքների։

Վերակառուցման կուրսի գործնական իրականացման մեջ դժվարություններն ու

Միջազգային ասպարեզում տեղի ունեցող դրական տեղաշարժերը չեն վերացնում բանական բավարարության սկզբունքներով երկրի հուսալի անվտանգությունն ապահովելու խնդիրը: Ռազմական քաղաքականության հարցերը, զինծառայողների և նրանց ընտանիքների նկատմամբ հոգատարությունը պետք է մշտապես գտնվեն պետության և կուսակցության տեսադաշտում:

Համագումարը հանդես է գալիս ԽՄԿԿ-ի միջազգային կապերի ընդլայնման և խորացման օգտին, ընդգծում կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ, մյուս ձախ ուժերի հետ սերտ փոխգործակցության, քաղաքական կուսակցությունների և հասարակական շարժումների լայն սպեկտրի հետ շահերի զուգադիպման ոլորտների որոնման կարևորությունը:

Կուսակցության արմատական նորացումը պահանջում է արմատապես նորացնել նրա ծրագիրը: Համագումարը անհրաժեշտ է համարում ստեղծել կուսակցության նոր ծրագրի նախապատրաստման հանձնաժողով, և նախագիծը դնել սկզբնական կուսակցական կազմակերպությունների քննարկմանը:

ԽՄԿԿ-ն հասարակությանը և պետությանը առաջարկում է առաջիկա ժամանակաշրջանի գործողությունների ծրագիր: Այն շարադրված է համագումարի «Դեպի մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմ» ծրագրային հայտարարության մեջ, երկրի զարգացման կարևորագույն պրոբլեմների վերաբերյալ ընդունված բանաձևերում:

Կուսակցական համագումարը այն բոլոր կոմունիստների ուշադրությունը, ում վստահված է աշխատել ԽՄԿԿ-ի ղեկավար մարմիններում, հրավիրում է անցյալի սխալների կրկնության անթույլատրելիության վրա, որոնք կուսակցությանը և հասարակությանը հասցրին ճգնաժամի, երկիրը լճացման ու միահեծանության, իսկ սոցիալիզմը՝ ձևախեղումների:

* * *

Երկիրը ծանր ժամանակներ է ապրում: Ավելի քան երբևէ անհրաժեշտ է բոլոր դեմոկրատական ուժերի համախմբում: ԽՄԿԿ-ն սոցիալիստական գաղափարի բոլոր կողմնակիցներին առաջարկում է լայն կոալիցիայի մեջ համախմբվել խորհուրդներում, հասարակական կազմակերպություններում և շարժումներում, ամենօրյա գործնական աշխատանքում: Նա պատրաստ է իրավահավասար երկխոսություն վարել, պաշտպանելով ամենայն կոնստրուկտիվը հանուն աշխատավոր մարդու, քաղաքացիական հաշտության և համազգային համերաշխության:

---

# ԴԵՊԻ ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ, ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻԶՄ

## ԽՄԿԿ XXVIII համագումարի ծրագրային հայտարարությունը

ԽՄԿԿ XXVIII համագումարը սկզբունքային կարևորություն է տալիս ընթացիկ պահի անաչառ գնահատմանը, արդի փուլում կուսակցության քաղաքականության հիմքերի որոշարկմանը, նպատակ ունենալով հաղթահարել հասարակության և կուսակցության ճգնաժամը, նորացնել դրանք, առաջ շարժվել դեպի մարդասիրական, դեմոկրատական սոցիալիզմ:

### I. ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱԿԱՆ ՆՊԱՏԱԿՆԵՐԸ

#### ԸՆԹԱՑԻԿ ՊԱՀԻ ԳՆԱՀԱՏԱԿԱՆԸ

Վերակառուցումը երկրի կյանքում դեմոկրատական տեղաշարժերի սկիզբը դրեց: Հասարակական զարգացման գործընթացների ամբողջ հակասականությամբ հանդերձ տեղի է ունենում ժողովրդի հոգևոր և քաղաքական ազատագրում, մարդիկ քաղաքացիական և ազգային արժանապատվություն են ձեռք բերում, իրենց ձեռքը վերցնում հասարակության և պետության գործերը: Փլուզվում են առասպելները, որոնք մթագնել էին գիտակցությունը և խանգարում էին տեսնել առաջընթաց ուղին: Վերացվում են երկիրը արտաքին աշխարհից բաժանող արգելքները: Քայլ առ քայլ հին ու նորի սուր պայքարում նախադրյալներ են ստեղծվում հասարակությունը դուրս բերելու ճգնաժամից, որտեղ այն հայտնվել է:

Համագումարը գտնում է. ճգնաժամի խոր արմատները ոչ թե սոցիալիզմի բուն գաղափարի սխալականությունն են, այլ այն ձևախեղումները, որոնց դա ենթարկվել է անցյալում: Հասարակական կյանքի բոլոր կողմերի պետականացումը, պրոլետարիատի անունից կուսակցական-պետական վերնախավի իրականացրած բռնապետությունը ծնեցին սեփականությունից և իշխանությունից մարդու օտարացման նոր ձևեր, հանգեցրին կամայականության և ապօրինության: Գիշատչաբար շահագործվում էր բնությունը: Տիրապետում էր դոգմատիզմը, առաջացնելով անհանդուրժողություն այլախոհության նկատմամբ: Արմատավորվում էր քամահրական վերաբերմունք ժողովուրդների մշակութային-պատմական արժեքների և մտավոր հարստության նկատմամբ: Աշխարհը դիտվում էր որպես հասարակական համակարգերի անհաշտ առճակատման ասպարեզ: Սոցիալիզմի սկզբունքների խեղաթյուրումները արդեն 30—50-ական թվականներին բարդ պրոբլեմներ առաջացրին երկրի զարգացման մեջ, իսկ 20-րդ դարի երկրորդ կեսում, երբ գիտատեխնիկական հեղաշրջման կապակցությամբ լուրջ շրջադարձ նկատվեց համայն մարդկության կյանքում, ի հայտ եկավ երկիրը դեպի համաշխարհային քաղաքակրթության հուն ուղղելու ավտորիտար-բյուրոկրատական համակարգի անկարողությունը: Այդուհանդերձ արմատական փոփոխությունների հրամայական անհրաժեշտությունը երկար ժամանակ անտեսվում էր: Հասունացած պատմական կոնֆլիկտի լուծումը արհեստականորեն կասեցվում էր ժողովրդից կտրված կուսակցական-պետական իշխանության կառուցվածքի կողմից:

Վերակառուցումը նշանավորեց արմատական շրջադարձ դեպի նորացման քաղաքականություն և սոցիալիզմի համար խորթ հասարակական ձևերից երկրի ազատա-

քաղաքական հոսանքների հետ երկխոսության և իրավահավասար պարտնյորության: Կուսակցությունը պատրաստ է նրանց հետ քաղաքական բլոկների ստեղծման:

ԽՄԿԿ անդամները մասնակցում են օրենքի շրջանակներում գործող մասսայական շարժումներին: Սակայն կուսակցությունը անթույլատրելի է համարում կոմունիստների անդամությունը այն մյուս կուսակցություններին, ինչպես նաև կազմակերպություններին, որոնք պրոպագանդում են շովինիզմ, նացիոնալիզմ, ռասիզմ, հակասոցիալիստական գաղափարներ:

ԽՄԿԿ-ն կնպաստի բանվորական ու գյուղացիական շարժումների վերածնմանը, մտավորականության հասարակական ակտիվության զարգացմանը:

ԽՄԿԿ-ն ողջունում է արհմիությունների նորացումը, պաշտպանում է ի շահ աշխատավորների, նրանց իրավունքների և ազատությունների պաշտպանության ակտիվորեն գործելու արհմիությունների ձգտումը:

ԽՄԿԿ-ն կոմերիտմիությունը դիտում է որպես երիտասարդության ինքնուրուն հասարակական-քաղաքական կոմունիստական կազմակերպություն, սպասում է, որ նա անմիջականորեն կմասնակցի կուսակցության քաղաքականության մշակմանն ու իրացմանը: Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պետք է սովորեն իրենց հարաբերությունները կառուցել որպես քաղաքական դաշնակիցներ: Հարկավոր է ըմբռնումով վերաբերվել նոր երիտասարդական կազմակերպությունների առաջացմանը, նպաստել նրանց սոցիալիստական և ընդհանուր մարդասիրական ուղղվածության ձևավորմանը, երիտասարդության մեջ ժողովրդի բախտին մասնակից լինելու զգացումի դաստիարակմանը: ԽՄԿԿ-ն իր բոլոր կազմակերպություններին նպատակամղում է վճռական շրջադարձ կատարել դեպի երիտասարդության պրոբլեմները: Դա թելադրվում է նաև հենց կուսակցության շահերով. առանց երիտասարդության կուսակցությունը ապագա չունի:

Սրանք են ԽՄԿԿ-ի գաղափարատեսական դիրքորոշումներն ու քաղաքական նպատակները, որոնցով պետք է ղեկավարվեն կոմունիստները, կուսակցական կազմակերպությունները և կուսակցական մարմինները իրենց գործնական աշխատանքում ընդհուպ մինչև ԽՄԿԿ նոր ծրագրի ընդունումը: Համագումարը հույս ունի, որ դրանք պաշտպանություն կգտնեն երկրի բոլոր դեմոկրատական ուժերի կողմից, որոնք հանդես են գալիս հանուն վերակառուցման, հանուն մեր հասարակության նորացման:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումի մասին

1990 թվականի հուլիսի 13-ին և 14-ին տեղի ունեցավ Խորհրդային Միության կոմունիստական կուսակցության XXVIII համագումարում ընտրված ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենում:

Կենտկոմի պլենումը գաղտնի քվեարկությամբ ընտրեց ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրո հետևյալ կազմով. Մ. Ս. Գորբաչով, Մ. Մ. Բուրոկյավիչյուս, Գ. Գ. Գումբարիձե, Ս. Ի. Գուրենկո, Վ. Ա. Իվաշկո, Պ. Կ. Լուչինսկի, Ա. Ս. Ձասոխով, Ք. Մահկամով, Ա. Մ. Մասալիև, Վ. Մ. Մովսիսյան, Ա. Ն. Մութալիբով, Գ. Ի. Յանաև, Ն. Ա. Նազարբաև, Ս. Ա. Նիյազով, Օ. Ս. Շենին, Ի. Կ. Պոլոզկով, Յու. Ա. Պրոկոֆև, Ա. Պ. Ռուբիքս, Գ. Վ. Սեմյոնովա, Է.— Ա. Սիլլարի, Ե. Ե. Սոկոլով, Ե. Ս. Ստրոև, Ի. Ա. Քարիմով, Ի. Տ. Ֆրոլով:

ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ ընտրվեցին՝ Օ. Դ. Բակլանովը, Բ. Վ. Գիդասպովը, Ա. Ն. Գիրենկոն, Վ. Ա. Կուպցովը, Ա. Ս. Ձասոխովը, Յու. Ա. Մանաենկովը, Գ. Ի. Յանաևը, Օ. Ս. Շենինը, Գ. Վ. Սեմյոնովան, Ե. Ս. Ստրոևը, Վ. Մ. Ֆալինը:

Քարտուղարության անդամներ ընտրվեցին Վ. Վ. Անիսկինը, Վ. Ս. Գայվորոնսկին, Ի. Ի. Մելնիկովը, Ա. Ի. Տեպլենիչևը, Գ. Տուրգունովան:

Պլենումը «Պրավդա» թերթի գլխավոր խմբագիր ընտրեց Ի. Տ. Ֆրոլովին:

Եվ էլի մի հարց: Զգտելով հանրապետությունների սուվերենության հաստատման, մենք չպետք է քանդենք մեր Միության տնտեսական հիմքերը: Չպետք է անտեսենք մեր վաղեմի պարտնյորների շահերը: Չի կարելի հաշվի չառնել շուկայական հարաբերությունների անցնելու նախադրյալների ու հնարավորությունների մեջ եղած տարբերությունները:

Մենք պետք է մշակենք ջանքերի կոորդինացման և միավորման ճկուն պետական-իրավական մեխանիզմ, առանձնապես համազգային աղետների հետևանքների վերացման գործում, ինչպիսիք են Չեռնոբիլը, Արալը, Հայաստանի երկրաշարժը և այլն: Հենց նման մեխանիզմի բացակայությունը հանգեցրեց տագնապալի այն իրավիճակին, որ ստեղծվել է մեր հանրապետությունում: Հայ ժողովուրդը խորապես երախտապարտ է ամենքին կարեկցանքի և օգնության համար: Բայց այսօր լրիվ ձախողված է երկրաշարժի հետևանքների վերացման ամբողջ ծրագիրը: Հանրապետության 3,5 միլիոն բնակիչներից մոտավորապես մեկ միլիոն մարդ, ներառյալ 260 հազար փախստականները, արդեն երրորդ ձմեռը ստիպված կլինեն անցկացնել վրաններում կամ ժամանակավոր կացարաններում: Իրադրությունը հրամայաբար պահանջում է մշակել և ԽՍՀՄ Գերագույն խորհրդում հաստատել Հայաստանի երկրաշարժի հետևանքների վերացման պետական ծրագիր, ինչպես նաև ճանաչել բոլոր փախստականների իրավական վիճակը:

Ընկերնե՛ր: Հայաստանի պատվիրակները գտնում են, որ միայն կուսակցության արմատական նորացման, հասարակության դեմոկրատացման, իրավական պետության ստեղծման միջոցով, այլ ոչ թե «ուժեղ», «ամուր» ձեռքի օգնությամբ, ինչի կարոտը դրսևորվեց նաև այս համագումարում, հնարավոր կլինի վերականգնել ԽՄԿԿ-ի հեղինակությունը և երկիրը դուրս բերել ճգնաժամային իրավիճակից:

Ծնորհակալություն:

**(Ծափահարություններ):**

---

# Հայաստանի կոմկուսից ԽՄԿԿ XXVIII համագումարի պատվիրակների ելույթները սեկցիաների նիստերում

**Լ. Ն. ՄԿՐՏՉՅԱՆ, Վ. Ֆանարջյանի անվան ուռուցքաբանական գիտական կենտրոնի տնօրեն («Կուսակցության նորացումը» սեկցիա)**

Ընկեր պատվիրակներ: Հարգելի նախագահ:

Մարքս-լենինյան տեսության և իրականության խզումը աճում էր տարիներ շարունակ: Դրան նպաստում էր գաղափարախոսական աշխատանքի լիակատար անջատվածությունը լայն զանգվածների կենսական պահանջմունքներից: Ուստի և կուսակցության համագումարում գոնե ուրվագծերով պետք է պատկերել այն հասարակությունը, որը մենք ձգտում ենք ստեղծել, և գիտականորեն հիմնավորել առաջադիմական այն վերափոխումների օբյեկտիվ օրինաչափությունները, որոնց ականատեսները ենք մենք:

Դժվար է դա ասել, բայց, ցավոք, կոմունիզմ հասկացությունը ներկայումս չի ընկալվում առանց բացասական երանգի: Կուսակցության անցյալի և ներկայի կոպիտ սխալների համար հարկ է լինում հատուցել: Դրա համար մեծապես մեղավոր է իրեն վարկաբեկած դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը, որը երբեք էլ դեմոկրատական չի եղել:

Ինչպես բարեխիղճ մոլորության, այնպես էլ կանխամտածված ստի հետևանք հանդիսացող գաղափարախոսական շեղումներից բացի, մեր օրհասական վիճակի պատճառներից է տարբեր աստիճանի կուսակցական ղեկավարների բարոյական անկումը: Կուսակցության շարքային անդամները, ազնիվ աշխատավորները գտնում են, որ նրանք, «ովքեր գիտակցաբար հասարակությունը հասցրել են ներկա վիճակին, պետք է պատասխանատվություն կրեն և ոչ թե նստեն դափնիների վրա»: Մենք բոլորս պետք է զգանք, որ երկիրը ղեկավարում են օրենքները և ոչ թե անհատները: Սակայն վճռական գործողություններ չկան: Դա ծնում է սոցիալական հուլություն և անիշխանություն: Վերջինը հատկապես զայրացուցիչ է: Ավելին, շարունակում է տեղի ունենալ այն անձանց ընտրություն կամ առաջադրում, ովքեր ավելի շատ հաջողություն են ունեցել ոչ թե գործում, այլ շաղակրատանքում, և իրենց դիրքը ամեն կերպ օգտագործում են իշխանության գլուխ մնալու համար: Համագումարում էլ, իմ կարծիքով, շատերը անկյունաքար են դարձնում ելույթի տպավորությունը, հմտորեն հարմարեցնում են կարգախոսները հիմնական մասսայի տրամադրություններին, տեղի է ունենում մի շարք պրոբլեմների մակերեսային քննարկում և ոչ թե դրանց խոր ուսումնասիրություն:

Որո՞նք են իմ կոնկրետ առաջարկությունները:

1. Հիմնավորել և բարձրաձայն հայտարարել, որ սոցիալիզմի տոտալիտարական տարբերակի ձախողումը չի նշանակում առհասարակ սոցիալիստական ընտրության անհաջողություն: Սա գլխավոր հարցն է, քանի որ ամբողջ հետհեղափոխական ժամանակաշրջանի հարաճուն քննադատության ֆոնի վրա ինչպես կուսակցության, այնպես էլ հասարակության մեջ կորել է հավատը սոցիալիստական իդեալների նկատմամբ: Մարդիկ գտնում են, որ մեզ մոտ գոյություն ունի հասարակական զարգացման փակուղային տարբերակ: Ուստի և գիտնականները պետք է մշակեն այսպես կոչված դեմոկրատական սոցիալիզմի գաղափարատեսական հիմքերը: Որպես բժիշկ կուզենայի դրան ավելացնել երկու խոսք:

Արհեստական մոդելների ստեղծման համար ավելի ու ավելի հաճախ են պատճենվում օրգանիզմի այս կամ այն համակարգի գործունեության սկզբունքները: Իսկ դա նախ և առաջ ինքնակարգավորելիությունն է: Չէ որ մեզանից ոչ մեկը չի մտա-

և մենք։ Ինչու մետաֆիզիկորեն առաջնությունը տանք արևմտյան քաղաքակրթության նվաճմանը, ազգերի իրավունքների նկատմամբ անհատի իրավունքին, երբ մեզ մոտ ազգերը դեռևս առհասարակ չեն տիրացել այդ իրավունքներին, և ընդհանրապես ոչ մի իրավունքի։

Եկեք մտածենք, թե սա ինչքանով է ճիշտ։ Արդյո՞ք այս համադրույթը չի հանդիսանա փիլիսոփայական և իրավաքանական հիմք, իսկ գլխավոր քարտուղարը և պրեզիդենտը պնդում է, որ իրավաքանորեն ձևակերպվի այս համադրույթը՝ ազգային-ազատագրական շարժման ճնշման կամ պարզապես ազգերի իրավունքների հետագա ոտնահարումն արագացնելու իրավաքանական հիմք։ Արդյոք ավելի լավ չէ՞ մեր զարգացման այս փուլում հռչակել ազգերի իրավունքների և անհատի իրավունքների ներդաշնակ զուգակցման թեզը, մի կողմ նետելով առաջնության կանխադրույթը, ելնելով հենց մեր իրականությունը հաշվի առնելուց, և հրաժարվել անցած ժամանակաշրջանի արևմտյան նվաճումը մեխանիկորեն վերապատվաստելուց։

Այս ամենը վերաբերում է մտածողության իներցիային տեսական կտրվածքով։ Բայց այդ ուժն՝ իրեն զգալ է տալիս նաև գործնականում։ Ազգային փոխհարաբերությունների բնագավառը հավանաբար միակն է, որտեղ մեզանում փութաջան գիծ է վարվում պահպանելու ստեղծված քաղաքական ստատուս-քվոն։ Ընդսմին, հարցերը լուծվում են ուժային ճնշման եղանակով։

Վերցնենք մեկ այլ՝ գործնական աշխատանքի բնագավառը։ Ո՞վ է հորինել և ինչու՞ է ստեղծված երկրորդ դեմքերի հաստատությունը հանրապետությունների տարբեր հիմնարկներում՝ կենտկոմներից մինչև մինիստրություններ։

Ես խորապես հարգում եմ մեր երկրորդ քարտուղարին՝ ընկեր Լոբովին։ Դա պայծառ անձնավորություն է։ Ես չեմ անձնավորում, ես խոսում եմ երևույթի մասին։ Ինչո՞վ է առաջնորդվում կենտրոնը, հետևելով հին ժամանակների իներցիային, որը տվյալ դեպքում տեղական կադրերի նկատմամբ անվստահության կամ ազգային հանրապետության հանդեպ հարգանք չտածելու տպավորություն է թողնում։

Եվ, վերջապես, նախատեսվող կուսակցական կառուցվածքի մասին։ Եթե մենք վերջապես հասել ենք հիրավի ազատ, ինքնիշխան պետությունների դաշինք ստեղծելու անհրաժեշտության գիտակցությանը, ապա եկեք մտածենք, թե ինչքանով է ճիշտ միացյալ, կենտրոնացված կառուցվածքի պահպանումը։ Ինչու՞ է թույլատրելի, որ իշխանական գծով կարելի է նստել ազգային բնակարաններում և միավորված լինել միասնական դաշնակցային պետության մեջ, իսկ կուսակցական գծով չի կարելի տեր լինել սեփական տանը և նույնպես միասնական կուսակցություն կազմել։ Հանրապետության կոմկուսը պետք է լինի տվյալ հանրապետության աշխատավորների, ժողովրդի հիրավի ինքնուրույն քաղաքական ուժը, արտահայտելով նրանց շահերն ու իղձերը։ Նա պետք է առանձին իրավունքներ վերապահի ԽՄԿԿ-ին և հենց այդ շրջանակներում ճանաչի ընդունվող որոշումների պարտադիր լինելը։ Կոմունիստական կուսակցության ռուսաստանյան համագումարում հնչեց այն թեզը, որ առհասարակ վերացվեն հանրապետությունների կոմունիստական կուսակցությունները և դրանք հավասարեցվեն մարզային կուսակցական կազմակերպություններին։ Հանրապետություններ ներկայացնող ընկերները թող նայեն իրենց մանդատները. այնտեղ ոչ մի բառ չկա կոմունիստական կուսակցությունների մասին, այնտեղ կան միայն հայկական և այլ կազմակերպություններ։ Ես սա անթույլատրելի եմ համարում։ Մենք պետք է լրջորեն խորհենք, և եկեք խորհենք։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՆԱԽԱՀԱՄԱԳՈՒՄԱՐՅԱՆ ՀԻՄՆԱԴՐՈՒՅԹՆԵՐԸ

Հայաստանի կոմունիստական կուսակցությունը գնում է դեպի իր XXIX համագումարը։ Կոմունիստների համաժողովը կտա հանրապետության հասարակական խոր ճգնաժամի պատճառների օբյեկտիվ գնահատականը, կորոշի կուսակցության անելիքներն արդի փուլում։

Խորհրդային իշխանության տարիներին Հայաստանում տեղի ունեցան արմատական վերափոխումներ սոցիալ-տնտեսական և մշակութային շինարարության բնագավառում։ Հայաստանը դարձավ զարգացած արդյունաբերության, ազգային մշակույթի և գիտության երկիր։ Այդ ամենում էական էր Հայաստանի կոմկուսի դերը։ Սակայն տոտալիտարիզմի ժամանակաշրջանը վերասերեց մեր հասարակության բուն էությունը, կասեցրեց նրա հետագա առաջընթացը։

Վերակառուցումը դրեց բոլոր հասարակական կառուցվածքների արմատական վերափոխման սկիզբը։ Հասարակությունը լայնորեն քաղաքականացվում է, հաստատվում է գաղափարախոսական և քաղաքական բազմակարծություն, ասպարեզ են գալիս հասարակական նոր կազմակերպություններ և միավորումներ։

Ստեղծված նոր պայմաններում Հայաստանի կոմկուսի ստրատեգիայի իրականացումը պահանջում է աշխատանքի ձևերի, մեթոդների ու ոճի արմատական վերակառուցում, կուսակցության գործունեությանը ուղղություն տվող ծրագրային դրույթների մշակում։

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն հաշվի առնելով քաղաքական արդի իրադրությունը, անհրաժեշտ է համարում համախմբել բոլոր առաջադեմ ուժերը՝ ի շահ Հայաստանի ազատ, սուվերեն, ինքնուրույն հանրապետության ձևավորման, օրինապահպանության, ազգային զարթոնքի, Հայաստանի տնտեսական և քաղաքական անկախության։

Բացառիկ նշանակություն տալով իր ինքնուրույնության հաստատմանը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հրաժարվում է քաղաքական մենաշնորհից, կառավարման ոչ բնորոշ ֆունկցիաներից, ձգտում է իր քաղաքական նպատակներն իրականացնել բազմակուսակցականության պայմաններում, գործելով հանրապետության սահմանադրության շրջանակներում։ ԽՄԿԿ-ի հետ իր հարաբերություններում նա կընդունի այն որոշումները, որոնք չեն հակասում հայ ժողովրդի ազգային շահերին։ Նա առաջնորդվելու է ազգային ծրագրով, որի հիմնարար խնդիրներն են՝ ազգային միասնության հասնելը, հայ ժողովրդի քաղաքական ճակատագրի լուծումը ինքնորոշման հիման վրա, նրա հնարավոր դաշնակիցների հետ համագործակցությունը, համազգային արժեքների գերադասությունը, սոցիալ-տնտեսական վերելքի, բնակչության բարձր կենսամակարդակի, ազգային մշակույթի ազատ զարգացման ապահովումը։

ԼՂԻՄ-ի՝ մայր հայրենիքի՝ Խորհրդային Հայաստանի հետ վերամիավորման համար ծավալած շարժումները դիտելով որպես ազգային ազատագրական պայքար, հավատարիմ իր ավանդական քաղաքականությանը, Հայաստանի կոմկուսը պաշտպանելու է ԼՂԻՄ-ի հայ բնակչության ազգային ինքնորոշման անկասելի իրավունքը։

Ազգամիջյան հարաբերությունների սրման, Սումգայիթում, Բաքվում, Կիրովաբադում և Ադրբեջանի այլ վայրերում հայերի ցեղասպանության հետևանքով հարյուր հազարավոր հայեր բռնագաղթվեցին իրենց բնակության պատմական վայրերից և այլ տեղերից։ Նրանցից ավելի քան 260 հազարը ապաստան գտավ Խորհրդային Հայաստանում։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմն անհետաձգելի է համա-

րում խորհրդային իշխանությունների և հասարակական-քաղաքական կազմակերպությունների հետ մեկտեղ ապահովել փախստականների սոցիալական և կենցաղային հարցերի լուծումը, սահմանադրությամբ նախատեսված նրանց քաղաքացիական իրավունքների ապահովումը:

Համաժողովրդական առաջնահերթ խնդիր է 1988 թվականի դեկտեմբերին հանրապետությունում տեղի ունեցած ավերիչ երկրաշարժի հետևանքների վերացումը: Բարձր գնահատելով Խորհրդային Միության և միութենական հանրապետությունների, աշխարհի բազմաթիվ երկրների և ժողովուրդների, սփյուռքահայության անշահախնդիր մարդասիրական օգնությունն ու մասնակցությունը վերականգնման աշխատանքներին, կուսակցությունը բոլոր միջոցներով կաջակցի ավերված քաղաքների ու գյուղերի շուտափույթ վերածնմանը, տուժած բնակչության սոցիալ-տնտեսական, բարոյահոգեբանական վերականգնմանը:

Վերաիմաստավորելով անցյալը, ձերբազատվելով վարչաբյուրոկրատական մեթոդներից, կուսակցությունը ըստ ամենայնի կնպաստի խորհուրդների՝ որպես իշխանության օրինական մարմինների լիարժեք գործունեությանը: Ինքնաքննադատաբար գնահատելով սեփական գործունեությունը, նա ձգտելու է իրական գործերով նվաճել մասսաների վստահությունը և համակրանքը, հասնել քաղաքացիական համերաշխության, բոլոր ուժերի ու շարժումների հետ համագործակցության:

Հայաստանի կոմկուսը իր գործունեության ընթացքում ձգտելու է առաջնության հանրապետության հասարակական-քաղաքական կյանքում, նպաստելու է նրա սոցիալ-տնտեսական առաջընթացին: Հաշվի առնելով հայ ժողովրդի դարավոր անցյալի և արդիականության՝ XX դարի անցած տասնամյակների քաղաքական դասերը, Հայաստանի նորացված կոմկուսը պետք է դառնա իսկապես ինքնուրույն քաղաքական կազմակերպություն, որի նպատակն է ազգի, ժողովրդի, մարդու անբռնադատելի, միջազգային նորմերով ճանաչված իրավունքների վրա խարսխված մարդասիրական, դեմոկրատական, սոցիալիստական հասարակության կառուցումը:

Պատմական արդի փուլում, հենվելով բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության և հասարակական մյուս խավերի վրա, համագործակցելով Հայաստանի հասարակական-քաղաքական ուժերի, ներքին և արտաքին սփյուռքի ազգային շարժումների ու կուսակցությունների հետ, Հայաստանի կոմկուսը իր գերագույն խնդիրն է համարում հանրապետությունը դուրս բերել ստեղծված ճգնաժամային իրավիճակից: Նա հանրապետության արհմիությունները, կոմերիտմիությունը և հասարակական մյուս կազմակերպությունները դիտում է որպես հասարակական անկախ և ինքնուրույն ուժեր, որոնց գործունեությունը նպաստում է մեր հասարակության հետագա դեմոկրատացման և առաջադիմության շարժընթացին:

Հայաստանի կոմկուսի խնդիրն է պայքարել անկախ, ինքնուրույն, իրավական պետության՝ ստեղծման համար, որը պայմանագրային կապերի մեջ կմտնի նորացվող խորհրդային համակարգի բոլոր սուբյեկտների հետ և կհաստատի իր ինքնուրույն տեղը միջազգային ասպարեզում:

Հայաստանի կոմկուսը ձգտում է դեմոկրատական այնպիսի հասարակության ստեղծման, որի բնորոշ գծերն են՝

— քաղաքացիների սոցիալական պաշտպանվածությունը, աշխատանքի երաշխավորված իրավունքը.

— ժողովրդի հոգևոր և ինտելեկտուալ պոտենցիալի ամրապնդումը և զարգացումը, ազգային գենոֆոնդի պահպանումը.

— սուվերենություն և ժողովրդական ինքնավարություն՝ հանձինս խորհուրդների.

— ազգերի, մարդու իրավունքների պաշտպանություն, համոզմունքի և խղճի ազատություն.

— մարդուն արժանի նյութական բարեկեցություն և սոցիալական պայմանների ապահովում.

— հոգատարությունը որբ երեխաների, միայնակ կանանց, պատերազմի և աշխատանքի վետերանների, հաշմանդամների, բազմազավակ և երիտասարդ ընտանիքների նկատմամբ.

— բնական և հասարակական գիտությունների, ժողովրդական կրթության, մշակույթի, մայրենի լեզվի, ազգային գրականության ազատ ստեղծագործական զարգացում: Հանրապետությունում պետք է ապահովվի հայոց լեզվի պետական կարգավիճակը:

Հայաստանի կոմկուսը արդեն մշակում է իր ծրագիրն ու կանոնադրությունը,



միջկուսակցական կապեր կհաստատի խորհրդային հանրապետությունների, ինչպես նաև արտասահմանյան երկրների քաղաքական ուժերի և կուսակցությունների հետ:

Զուգորդելով ազգային և ինտերնացիոնալ սկզբունքները, նա վճռականորեն մերժում է նացիոնալիզմի, մեծապետական շովինիզմի, ռասիզմի, հետադիմական գաղափարախոսության բոլոր տեսակի դրսևորումները, հարգանքով է վերաբերվում բոլոր ազգերին և ազգություններին, ճանաչելով նրանց իրավահավասարությունը:

Հայաստանի կոմկուսը սոցիալ-տնտեսական քաղաքականության բնագավառում ստրատեգիական կուրսի գերագույն նպատակն է համարում հանրապետությունում տիրող խոր ճգնաժամի հաղթահարումը, ժողովրդի բարեկեցության բարձրացումը, նրա նյութական ու հոգևոր զարգացումը, հանրապետությունում սոցիալական արդարության հաստատումը, որոնք կենսական նշանակություն ունեն բնակչության բոլոր խավերի համար: Այդ նպատակով նա պայքարելու է ժողովրդական տնտեսության արմատական վերակառուցման, սեփականության բոլոր ձևերի արմատավորման համար:

Հայաստանի կոմկուսը իր առաջնահերթ խնդիրներից է համարում՝

— սեփականության ձևերի բազմազանության վրա խարսխված շուկայական հարաբերությունների արմատավորումը,

— հանրապետության տարբեր ռեգիոններում կենսամակարդակների ներդաշնակ բարձրացման պայմանների ստեղծումը,

— նոր քաղաքաշինական քաղաքականության իրականացումը, քաղաքների, գյուղերի, ավանների սոցիալ-տնտեսական և կուլտուրական վերակառուցումը, բոլոր բնակավայրերի կառուցապատման համալիր ծրագրի ապահովումը, կոոպերատիվ և անհատական շինարարության խրախուսումը,

— նոր էկոլոգիական քաղաքականությունը, որի նպատակն է մարդկանց համար առողջ կենսապայմանների ստեղծումը, օդային ու ջրային ավազանների, հատկապես Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանումը և Արարատյան դաշտի հողատարածությունների վիճակի էական բարելավումը,

— անցումային փուլում էկոնոմիկայի ֆինանսական և ամբողջ տնտեսական իրավիճակի առողջացումը, սպառողական շուկայի հագեցումը, դրամազանգվածի և դրա ապրանքային ապահովման միջև հաշվեկշռվածության հաստատումը:

Տնտեսական քաղաքականության մեջ առաջնայինը մնում է պարենային պրոբլեմը, որի լուծման հիմք կդառնա հողային ռեֆորմը, հողօգտագործման բոլոր ձևերի զարգացումը: Հայաստանի կոմկուսը հանդես կգա այն բանի օգտին, որ վճռական շրջադարձ կատարվի դեպի տնտեսավարման նոր մեթոդները, որոնք հնարավորություն կտան ասպարեզ բացել գյուղի աշխատավորների աշխատանքային ու սոցիալական ակտիվության համար հողը գյուղացիության սեփականությունը դարձնելու միջոցով, խթանել գյուղացու անձնական շահագրգռությունը, նրան վերադարձնել հողատիրոջ իրավունքը:

Հայաստանի կոմկուսի ագրարային քաղաքականության մեջ հատուկ տեղ կգրավեն գյուղի սոցիալական ոլորտի, հողի աշխատավորների աշխատանքի ու կենցաղի պայմանների արմատական բարելավման հարցերը: Առաջնակարգ ուշադրություն կդարձվի հանրապետության նախալեռնային և լեռնային գոտիներում լքյալ գյուղերի վերածնմանը:

Համագործակցելով հանրապետության պառլամենտի և կառավարության հետ, կուսակցությունը բոլոր միջոցներով նպաստելու է Հայաստանում տնտեսական ազատ գոտու բնորոշ արտադրական հարաբերությունների արմատավորմանը, ըստ ամենայնի պաշտպանելով հանրապետության տնտեսությունը համաշխարհային տնտեսական կապերի մեջ ներառնելու, սփյուռքի հետ արդյունավետ միասնացման գործընթացները, սահմանամերձ առևտուրը, հանրապետության ամբողջ արտաքին տնտեսական համալիրը զարգացնելու, համատեղ ձեռնարկությունների լայն ցանց ստեղծելու, ազատ ձեռնարկչության սկզբունքները ներդնելու նպատակով գործադրվող ջանքերը:

Հետամուտ իր որոշումներին, Հայաստանի կոմկուսը հանդես է գալիս ԼՂԻՄ-ի հետ տնտեսական, գիտատեխնիկական կապերի համակողմանի ինտեգրացման, տարբեր ճյուղերում և հասարակական կյանքի բնագավառներում մարզի հետ միասնացման գծի հետևողական իրականացման օգտին:

Հասարակության արմատական վերափոխման խնդիրները անհրաժեշտ են

Մ. Վ.— Այո՛, կուսակցության ավանգարդային դերի շուրջ շատ խոսակցություն եղավ: Փաստաթղթերում էլ բացատրվում է, թե այդ ավանգարդային դերը ինչպես պետք է ձեռք բերի կուսակցական աշխատողը կամ կոմունիստը: Ավանգարդային դերը կլինի այն դեպքում, եթե կուսակցական մարմինները, կոմունիստները կարողանան շահել ժողովրդի համակրանքը, ընտրություններում ստանան նրա աջակցությունը: Գաղտնիք չէ, որ պառլամենտում, ժողովրդական դեպուտատների խորհուրդներում դեպուտատության թեկնածուներին, հիմնարկ-ձեռնարկությունների թափուր պաշտոնի համար մարդկանց միշտ առաջադրում էր կուսակցական մարմինը, կոնկրետ մեզ մոտ՝ շրջանային կոմիտեն: Այժմ էլ ոչ ոք չի զրկում նրան այդ իրավունքից՝ առաջադրելու իր կոմունիստին: Հիմա թեկնածուներ կարող են առաջադրել նաև ոչ ֆորմալ կազմակերպությունները: Եթե մեր թեկնածուն իր պլատֆորմով ավելի անհրաժեշտ է տվյալ խորհրդին, տնտեսությանը, հիմնարկությանը, ձեռնարկությանը և անցնի, ապա նշանակում է, որ մենք ընդհանուր ավանգարդային դեր կունենանք շրջանում: Սա է հիմնականում գաղտնիքը:

Պետք է ընդունել, որ օրենքները ճիշտ են: Սակայն երկիրը ղեկավարող շատ մարմիններ ու նրանց ղեկավարներ խեղաթյուրեցին օրենքները, ստեղծեցին անձի իշխանություն... Եթե մեր կուսակցությունը հետևողականորեն գործի խորհրդային օրենքների պահանջներին համապատասխան, հետևի, որ դրանք ճշտորեն իրագործվեն, կարծում եմ, որ նա դրանով իսկ իր համար ավանգարդային դեր կապահովի հասարակության մեջ և հեղինակություն կվայելի աշխատավորության շրջանում:

**Ա. Ս.— Ինչի՞ մասին կուզեիք խոսել, եթե հանդես գայիք համագումարում, ի՞նչը գոհացրեց Ձեզ և ի՞նչը՝ ոչ:**

Մ. Վ.— Ես ուզում էի հանդես գալ համագումարում: Ցավոք, ձայն չտվեցին, ելույթիս ռուսերեն թարգմանությունը տանն է, կարդամ հայերեն տարբերակը. «Հարգելի պատգամավորներ, ես խնդրում եմ թույլ տաք մի քանի խոսքով ասել իմ տպավորությունների մասին համագումարից: Իհարկե, հիմա կմտածեք, թե Հայաստանից է, խոսելու է ազգային պրոբլեմից, որն այնքա՜ն դժվարությամբ է լրծվում ցանկացած լսարանում: Ո՛չ, ես ցանկանում եմ իմ մտքերը կիսել ձեզ հետ երկրում ստեղծված այս ծանր իրավիճակի և այս տասն օրվա մեր կատարած աշխատանքի շուրջ: Ես եկել էի համագումար անչափ մեծ սպասումներով: Այսօր, երբ արդեն ավարտվում է համագումարը, ես զգացի, որ նույն սցենարն էր, ինչպես որ սրանից առաջ, նախորդ հավաքներում: Բոլորս շուտով վերադառնալու ենք մեր տեղերը, եկեք հիշենք, թե ինչ վիճակի մեջ են գտնվում այն տեղամասերը, որտեղից մենք եկել ենք և ի՞նչ ենք ասելու և ի՞նչ արեցինք»:

Այսօր, եթե օրենքները գնահատում ենք, որ դրանք լավն են, և՝ իրոք, ԽՄԿԿ կանոնադրությունն էլ, պլատֆորմն էլ ճիշտ, ռեալ սկզբունքներից են բխում,— դա չի նշանակում, թե Գորբաչովի մտքերն են: Օրինակ, դեմոկրատական պլատֆորմի ներկայացուցիչը նշեց, որ այսօր իրենց պլատֆորմը հիմնականում համընկնում է կոմկուսակցության պլատֆորմին և իրենք հեռանալու պատճառներ չունեն: Իսկ եթե Բորիս Ելցինը հանձնեց կուսակցական տոմսը, այդ չի նշանակում, թե նա հեռանում է որպես դեմոկրատական պլատֆորմին հարող անձնավորություն, այլ որ նա ընտրվել է ՌԽՖՍՀ-ի Գերագույն խորհրդի նախագահ:

Ծարունակեմ կարդալ. «Ինչ կուսակցություն ուզում ես ընդունիր, այսօր ասել, թե ավանգարդային դերը մերն է, ժողովուրդը պիտի փախչի, որովհետև կեցությունն է որոշում գիտակցությունը: Եթե հաց չկա, տուրեմն ժողովուրդը չի հասկանա, ինչ պլատֆորմ էլ ուզում ես ներկայացրու, հարկավոր է առաջին հերթին կերակրել ժողովրդին: Միխայիլ Սերգեևիչ, դահլիճում անընդհատ լսեցինք էկոլոգիայի հարցերի, հողի սեփականության, ժողովրդին կերակրելու, իշխանությունը խորհուրդներին տալու, մեր սխալների մասին: Վերակառուցման այս հինգ տարիների ընթացքում հազարավոր էջեր են գրվել անցյալի ղեկավարման սխալների շուրջ: Այսօր էլ քննադատական խոսքեր ենք լսում ներկայիս ղեկավարների հասցեին, որոնցից շատերին հրապարակ է հանել վերակառուցման ալիքը: Նրանցից մեկը Եգոր Կուզմիչ Լիգաչովն է, որը կատարել է կոպիտ սխալներ, հատկապես գյուղատնտեսության բնագավառում, իսկ դուք հանդուրժել եք:

Այս համագումարում մենք լսեցինք նոր բառեր՝ հումանիստական սոցիալիզմ, կուսակցության ավանգարդային դեր և այլն, և այլն»: Ահա ինչի մասին կուզեի ասել իմ ելույթում:



**Ա. Ս.— ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմում և համագումարի պատգամավորների ելույթներում խոսվում է կուսակցության հեղինակության թուլացման մասին: Ո՞րն է հեղինակության չափանիշը: Ի՞նչ կասեիք այդ առնչությամբ: Ինչպիսի՞ հեղինակություն են վայելում ձեր շրջանի սկզբնական կուսկազմակերպությունները:**

Մ. Վ.— Հարցին պատասխանեմ վերջից: Մեր շրջանի կոմունիստներն առայժմ իրենց հեղինակությունը պահպանում են, ասեմ ինչպես: Երկու տարի առաջ, երբ ես ընտրվեցի շրջկոմի առաջին քարտուղար,— իսկ դա ժողովրդի կարծիքն էր՝ ժողովուրդը հավատաց և՛ ինձ, և՛ շրջանային կոմիտեին, և՛ այն ընկերներին, ովքեր այդ ժամանակ շրջանում ղեկավար պաշտոնների անցան,— այդ հավատը մնացել է մեզ մոտ: Հանրապետությունում տեղի ունեցած բոլոր բացասական իրադարձություններից Հոկտեմբերյանը մի քիչ զերծ մնաց: Մենք աշխատեցինք չկտրվել ժողովրդից, լինել նրա հետ, բացատրել, հասկացնել, որ ընդհանուր իրադրությունն է այդպես, եթե ինչ-որ սխալներ կան, ապա չի կարելի վերագրել կուսշրջկոմին կամ շրջանի ղեկավարներին: Իսկ հեղինակության անկումը ասեմ, թե որն ենք ընդունում: Կուսշրջկոմը ամբողջ 70 տարվա ընթացքում լիիրավ իշխանություն է ունեցել: Այդ իշխանությամբ էլ նա լուծել է կադրային, տնտեսական և սոցիալական խնդիրներ և այլն, բոլոր հարցերը կոորդինացվել են շրջանային կոմիտեում: Հեղինակության անկումը ոչ թե տեղի է ունեցել նրանից, որ կուսակցությունը այսօր չի կարողանում այդ հարցերում առաջնորդողի դերում լինել, այլ նսկառակը՝ եթե նա այդ դերում չէ, ապա մեխանիկորեն ինչ-որ տեղեր, բնագավառներ կան, որոնցից հրաժարվել է և ինչ-որ մեկը չկա, երկրորդը չկա, որպեսզի ստանձնի բաց թողածի ղեկավարումը:

Տնտեսական ինքնուրույնության մասին խոսք եղավ: Պետական պլանը հիմա էլ թելադրվում է վերևից, ո՞վ պիտի ապահովի այդ պլանի կատարումը: Տնտեսական ինքնուրույնություն եք տվել տնտեսական ղեկավարին, նա չի համաձայնում այդ պլանին, բայց պետությունը պահանջում է, ո՞վ պիտի զբաղվի, որ այդ պլանը կատարվի: Կուսակցության հեղինակությունը ընկել է, իշխանությունը չենք տվել խորհուրդներին, տնտեսության ղեկավարներին էլ ինքնուրույնություն չենք տվել, որովհետև պետական պլան ենք տվել: Տնտեսական ղեկավարը ինքնուրույնություն կունենար այն դեպքում, եթե այդ պետական պլանը չլիներ, շրջանային կոմիտեի միջամտությունը ներկայումս պարտադիր չէր լինի, որովհետև ինքը կիմանար ինչ արտադրել և ինչպես իրացնել: Երրորդ օղակի, միջին օղակի, որը պիտի համախմբեր, անհրաժեշտությունը չէր զգացվի:

Այսօր կենտրոնի ղեկավարության քաղաքականության սխալներից մեկն այն է, որ կոնկրետություն չկա հարցի լուծման համար: Քաոսային վիճակ է ստեղծվել, ով ավելի շատ թայֆաբազությամբ զբաղվի, նա էլ մի փոքր հեղինակություն կարող է ապահովել, այլապես պետականություն ոչ մեկի մոտ գոյություն չունի, թեկուզ տնտեսավարման լծակների շարժման, առաջավոր մեթոդների ներդրման նպատակ ոչ մեկը չունի, որովհետև զգում է, որ ինքը չէ դրա տերը: Եթե առաջ շրջկոմն ընդունում էր, որ ինքն է տերը, տնտեսության ղեկավարի վրա մատ էր թափ տալիս, թե այս պլանը չպետք է ձախողել, ապա տնտեսական ղեկավարը արյան գնով կատարում էր: Այսօր այդ օղակը չկա, ինքը շահագրգռված չէ, ես շահագրգռված չեմ: Եվ դրանից միայն գործն է տուժում...

**Ա. Ս.— Իսկ հեղինակության չափանիշը ո՞րն է, կուսակցական մարմինների, կոմունիստների հեղինակության կապը մասսաների հե՞տ, այո՞:**

Մ. Վ.— Ոչ միայն կապը մասսաների հետ: Դա, իհարկե, շատ կարևոր է, մասսաները պիտի որ կուսակցական աշխատողին, կուսակցական ապարատին հավատան ու վստահեն: Կուսակցության, նրա յուրաքանչյուր օղակի հեղինակության չափանիշը ավանգարդային դերն է: Եթե կուսակցությունն ապահովի ավանգարդային դերը, այսինքն՝ կարողանա առաջնորդվել ժողովրդի հոգեբանությամբ, կատարել նրա պահանջները, երկիրը, ռեգիոնը դուրս բերել տնտեսական ճգնաժամային նեղ վիճակից, ապա նա կունենա հեղինակություն: Իսկ եթե այս բոլորի մեջ կուսակցության դեմքը չի երևում, դերը չի զգացվում, նա չի կարողանում միջամտել, օգնել, անել, կանգնել գործի գլուխ այդ հարցերը լուծելու համար, ապա մեխանիկորեն ստացվում է, որ նա զրկված է հեղինակությունից:

Հեղինակության չափանիշ են նաև հիմնավորված որոշումներ ընդունելը և դրանց հետևողական կենսագործումը: Կուսակցական մարմնի հեղինակությունը

մունիստներ, որոնք, իրոք, պաշտպանեն մեր պլատֆորմը: Այնպես կան մարդիկ, որոնք տատանման մեջ են: Նրանք հոգով, էությամբ կոմունիստներ չեն: Ես սկզբում ասացի, որ մեր պլատֆորմը ճիշտ է, կատարողներն են սխալ եղել: Այսօր ի՞նչ տարբերություն, թե կատարողը, կոմունիստ կատարողը կարողանում է անդամավճար մուծել, բայց դուրս է գալիս կուսակցությունից, գնում անդամագրվում ՀՀՇ-ին և նորից նույն անդամավճարը մուծում նրան, ընդունում նրա պլատֆորմը, որը սկզբունքով նման է կուսակցության ընդունած պլատֆորմին: Ուրեմն նա է պլատֆորմի իրագործողը և ոչ թե այս կամ այն կուսակցությունը: Հետևաբար, տատանվող, հեղհեղուկ սկզբունք չունեցող կոմունիստը պատահական մարդ է եղել կուսակցության համար, եթե նա այսօրվա երևույթներին համապատասխան է շարժվում ու գործում: Եթե կշեռքի ծանր նժարը, օրինակ, իջնում է ձախ, նա մոտենում է այդ նժարին, եթե իջնում է աջ, մոտենում է հակառակ նժարին:

Այսպիսով, եթե կոմունիստները հավատարիմ մնան իրենց կուսակցության և՛ սկզբունքներին, և՛ պլատֆորմին, ապա վերջինս կմնա ավանգարդային դերում: Գաղտնիք չէ, կուսակցության շարքերը լքող կոմունիստներ շատ կան: Ինչպիսի հաջողությամբ նրանք ընդունվել են կուսակցության մեջ, նույնպիսի հաջողությամբ էլ թողնում են կուսակցությունը: Այո՛, նրանք պատահական մարդիկ են, հավատարիմ զինվոր չեն եղել կուսակցության համար:

**Ա. Ս.— Իսկ կուսակցության շարքերի համալրման գործը ինչպե՞ս է, ո՞ր կազմակերպություններում աճ կա և հակառակը:**

Մ. Վ.— Ասեմ: Գյուղական սկզբնական կուսկազմակերպություններում դեռ հավատ կա, ես սխալ ասացի, ոչ թե դեռ, այլ հավատը մեծ է կուսակցության հանդեպ: Մինչդեռ այն կազմակերպությունները, որտեղ մտավորականություն շատ կա,— որոնք հույսեր էին կապում կուսակցության հետ իրենց նեղ նպատակների համար, — կոմունիստները մի քիչ ավելի շատ են տատանվում: Շատ մարդիկ լքում են մեր կուսակցությունը, բայց ո՞ր կուսակցության մեջ են մտնում և ի՞նչ պլատֆորմով, ես չգիտեմ: Օրինակ, իմ կարծիքն այն է, որ ցանկացած կոմունիստ պիտի իմանա, թե ինչ պլատֆորմով որ կուսակցությանն է ծառայելու:

**Ա. Ս.— Միքայել Վլադիմիրի, վերջին հարցը. ի՞նչ կասեիք հանրապետությունների կոմկուսների և սկզբնական կազմակերպությունների ինքնուրույնության մասին:**

Մ. Վ.— Ըստ էության, հանրապետությունների կոմկուսների ինքնուրույնության հարցը քննարկվեց համագումարում: Մեծամասնությունը դեմ էր այն կարծիքին, որ հանրապետությունների կոմկուսները առանձին գործեն, բայց ունենան իրենց պլատֆորմը, ծրագիրը, կանոնադրությունը ԽՄԿԿ ծրագրի ներքո: Երբ այդ հարցը քվեարկվեց, չնայած Գորբաչովը կողմ էր, որ այդ ինքնուրույնությունը լինի, սակայն դահլիճը հակառակվեց: Մեծամասնությամբ անցավ դահլիճի կարծիքը՝ այսինքն հանրապետությունների կոմկուսները ինքնուրույն չլինեն: Այստեղ մի վախ կա. եթե այսօր կուսակցություններն էլ առանձնանան, ապա որոշ ղեկավարներ արդեն կորցնում են իրենց դիրքերը:

**Ա. Ս.— Իհարկե, կենտրոնի ղեկավարները:**

Մ. Վ.— Այո՛, կենտրոնի ղեկավարները շատ բան են կորցնում: Եվ այս հարցում Գորբաչովի՝ ինքնուրույնությանը համակարծիք լինելը ես չկարողացա հասկանալ: Դա կամ ձև էր, կամ ինչ-որ տեղ մոտեցում՝ պրեզիդենտական իշխանության ամրապնդման համար:

Համագումարի պատվիրակները միաբան էին սկզբնական կուսկազմակերպությունների ինքնուրույնության ամրապնդման գործում: Եվ ԽՄԿԿ կանոնադրության մեջ այնպիսի արտոնյալ կետեր կան, որոնք, ինձ թվում է, կբարձրացնեն նրանց հեղինակությունը և արմատական տնտեսական ռեֆորմի իրականացման մեջ նրանց ներդրումը ավելի շատ կլինի:

---



# ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԼԻԱՐՅՈՒՆ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՀՈՒՍԱԼԻ ԳՐԱՎԱԿԱՆԸ

**Գ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**

ՄԵՐ ԼԵՌՆԱՅԻՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ, և դա հաստատում է կյանքը, թերևս չկա ավելի կարևոր խնդիր, քան հուսալի և անվտանգ կապի ապահովումը տարբեր բնակավայրերի ու երկրի մյուս շրջանների միջև: Անկասկած, ճանապարհները երկրի արյունատար անոթներն են, որոնցով իրականացվող ուղևորների ու բեռների անխափան փոխադրումներով է մեծապես պայմանավորված մեր ձեռնարկումների հաջողությունը: Այդ զարկերակների համաչափ ու կանոնավոր բաբախյունը լիարյուն և առողջ տնտեսական մեխանիզմի կենսագործունեության լավագույն վկայությունն է: Այսօրվա դրությամբ 7682 կմ ընդհանուր օգտագործման ճանապարհներ է սպասարկում հանրապետության ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստրությունը: Դրանք դասակարգվում են ըստ նշանակության՝ միութենական (1416 կմ), հանրապետական (1898 կմ) և տեղական (4368 կմ): Առկա ճանապարհային ցանցն իր աշխարհագրական դիրքով հիմնականում բավարարում է ժողովրդական տնտեսության բեռնափոխադրումների պահանջը և նոր ուղղություններով ճանապարհների կառուցման անհրաժեշտություն չի զգացվում: Ներկայումս ճանապարհաշինարարների աշխատանքները հիմնականում նպատակամղված են գոյություն ունեցող ճանապարհների վերակառուցմանը, կատարելագործմանը, նրանց պատշաճ վիճակի ապահովմանը:

Վերջին հինգ տարում սպասարկվող ցանցը կրել է նկատելի որակական փոփոխություն: Եթե ցանցի ամբողջ երկարությունն ավելացել է ընդամենը 155 կմ, ապա ամուր ծածկով ճանապարհներինը՝ 474 կմ, իսկ ասֆալտբետոնյա ծածկ ունեցողներինը՝ 890 կմ: Այս ամենի շնորհիվ այսօր ցանցի հիմնական որակական ցուցանիշը համարվող ամուր ծածկ ունեցող ճանապարհները կազմում են ամբողջի 96,9 տոկոս, իսկ կատարելագործված ծածկ ունեցողները 75,9 տոկոս՝ միջին միութենական 86,8 և 51,6 տոկոս համապատասխան ցուցանիշների դեպքում և այս ցուցանիշներով մեր հանրապետությունը Միության մասշտաբով գտնվում է երրորդ տեղում:

Մեզ մոտ տարածքի յուրաքանչյուր 1000 քառ. կմ մակերեսին ընկնում է 195,6 կմ ճանապարհ, կատարելագործված ծածկով, իսկ 1000 հա վարելահողին՝ 116,6 կմ ճանապարհ, միջին միութենական 22,6 կմ և 22,2 կմ ցուցանիշների դեպքում: Այստեղ մենք զբաղեցնում ենք 1-ին և 2-րդ տեղերը:

Այսօր մեր ճանապարհներին 1985 թվականին եղած 12 փայտյա թռիչքային կառուցվածքով կամուրջներից մնացել են ընդամենը 4-ը՝ 22 գծամետր ընդհանուր երկարությամբ, այն էլ երկրորդական, քիչ օգտագործվող ճանապարհներին:

Վատ չեն աշխատել հայ ճանապարհաշինարարները ինչպես 1989 թվականին, այնպես էլ ամբողջությամբ վերցրած հնգամյակի անցած 4 տարիներին:

Այսպես, 1986—1989 թվականների պետական կապիտալ ներդրումների իրացման պլանը կատարվել է 101,1 տոկոսով, սեփական ուժերով կատարվող շինմոն-

---

*ՄԵԼՔՈՒՄՅԱՆ ԳԵՈՐԳԻ ԱՐՇԱԿԻ— Հայկական ԽՍՀ ավտոմոբիլային ճանապարհների շինարարության և շահագործման մինիստր*

տաժային աշխատանքներինը՝ 105,6 տոկոսով, պլանից ավել գործարկվել են 8,8 մլն ռուբլու հիմնական ֆոնդեր, շահագործման են հանձնվել 281,2 կմ հարմարավետ ճանապարհներ՝ 260,6 կմ պլանի դիմաց: Ամբողջությամբ վերցրած կապալային աշխատանքների պլանը կատարվել է 108,0 տոկոսով: Հիմնական ու միջին նորոգման է ենթարկվել 4567 կմ ճանապարհ՝ գերակատարելով առաջադրանքը:

Չնայած սեփական ուժերով կատարած աշխատանքների լավ ցուցանիշներին, ԽՍՀՄ տրանսպորտային շինարարության մինիստրության թունելային և կամրջաշինական ջոկատների կողմից կապալային աշխատանքների պլանների շուրջ 10 մլն ռուբլու թերակատարման հետևանքով մինիստրությունը, որպես պատվիրատու, շինմոնտաժային աշխատանքների 4 տարվա պլանը թերակատարել է 5,6 տոկոսով:

1989 թվականին ճանապարհաշինարարները, գերակատարելով հիմնական ցուցանիշների պլանային առաջադրանքները, միաժամանակ զգալիորեն գերազանցեցին 1988 թվականին ձեռք բերվածը: Կապիտալ ներդրումների գծով աճը կազմեց 27,4 տոկոս, սեփական ուժերով շինմոնտաժային աշխատանքներինը՝ 19, կապալային աշխատանքներինը՝ 16,1 տոկոս:

1988 թվականի դեկտեմբերին տեղի ունեցած արհավիրքը զգալի վնաս պատճառեց նաև հանրապետության ճանապարհային տնտեսությանը, իսկ նրա հետևանքների վերացման հետ կապված հարցերը խիստ ծանր ու պատասխանատու խնդիրներ դրեցին ճանապարհաշինարարների առջև:

Չնայած ավտոմոբիլային ճանապարհներն ու կառուցվածքները նույնիսկ երկրաշարժի էպիկենտրոնում (Սպիտակի շրջանում) վատ չծառայեցին, այնուամենայնիվ աղետից խիստ տուժած միայն հյուսիսային 7 շրջաններում (Ամասիայի, Ղուկասյանի, Ախուրյանի, Արագածի, Սպիտակի, Գուգարքի և Ստեփանավանի) մինիստրության սպասարկած ընդհանուր օգտագործման ճանապարհների ցանցի, որը կազմում է 1132 կմ, կեսից ավելին տուժել էր տարբեր աստիճանի, այդ թվում 52 կմ ճանապարհ և 5 կամուրջ ստացել էին ծանր վնասվածքներ, ավերվել էին կամ խիստ վտանգավոր դարձել երթևեկության համար: 552 կմ ճանապարհ և 55 կամուրջ ու խողովակ ստացել էին միջին և թույլ վնասվածքներ: Վնասվել էին նշված շրջաններում գտնվող 10 կազմակերպություններից 9-ի արտադրական բազաները: Շարքից դուրս էր եկել 4 ասֆալտբետոնի գործարան, 47 միավոր մեխանիզմներ ու հատուկ տրանսպորտային միջոցներ: Զոհվել են 11 ճանապարհաշինարարներ և 122 մարդ նրանց ընտանիքների անդամներից:

Այսպիսի ծանր կորուստներով ճանապարհաշինարարները սկսեցին հնգամյակի 4-րդ տարին և ի պատիվ նրանց պետք է ասել, որ աղետի գոտու մեր կոլեկտիվները, հանրապետության ճանապարհաշինարարների բոլոր կոլեկտիվների տնտեսական, նյութական և, ամենակարևորը՝ բարոյական մեծ օգնությամբ կարճ ժամկետում կարողացան համախմբվել, և ձեռնամուխ լինել տրանսպորտի անխափան երթևեկության ապահովման պատասխանատու գործին:

Երկրաշարժից ընդամենը 3—4 օր հետո աղետի գոտու վնասված բոլոր ճանապարհներին վերականգնվեցին երթևեկության նորմալ պայմանները, վնասված կամուրջներն ու հողային պաստառի փլվածքները ապահովվեցին շրջանցներով, ճանապարհային նշաններով ու անհրաժեշտ կահավորման տարրերով:

1989 թվականին աղետի գոտու 19 շրջանների ու քաղաքների, ինչպես նաև դեպի նրանց տանող հիմնական ավտոմայրուղիների վրա կատարվեց 41,7 մլն ռ. շինմոնտաժային աշխատանք, որը համարյա կրկնակի ավելի է, քան կատարվել էր 1988 թվականին այդ նույն շրջաններում:

Ֆինանսավորման բոլոր աղբյուրներով (կենտրոնացված կապիտալ ներդրումներ, ճանապարհների հիմնական ու միջին նորոգման գումարներ, օգնության ֆոնդից վերականգնման համար տրամադրված գումարներ) կառուցվել ու նորոգվել է 421 կմ ճանապարհ՝ 361 կմ պլանի դիմաց:

Վերակառուցվել են Բայանդուր-Լենինական, Արևաշող-Շենավան, Արտենի-Գետափ, Ջրաշենի ներքին ու նրա շրջանցող ճանապարհները և Ուռուտ գյուղի մոտ 120 գծմ ընդհանուր երկարությամբ 3 կամուրջները, ավարտված են նաև Լենինական-Ջաջուռ (7 կմ), Դիլիջան—Մարգահովիտ (4,7 կմ) խճուղիները, որոնք նախատեսված է գործարկել 1990 թվականի ընթացքում:

Սկսված է Լենինական և Սպիտակ քաղաքների 24 և 11 կմ երկարությամբ



շրջանցող ճանապարհների շինարարությունը 11,25 մ լայնությամբ, եռաշերտ ասֆալտբետոնյա ծածկով: Ճանապարհների նորոգման և օգնության ֆոնդի գումարներով զգալի աշխատանքներ կատարվեցին Սպիտակ—Լենինական, Կիրովական—Սպիտակ, Սիլքար—Սպիտակ, Լենինական—Մայիսյան, Պուշկինի լեռնանցքով անցնող և այլ ճանապարհներին: Դրա հետ մեկտեղ մինիստրությունը 1989 թ. մի քանի կարևոր երթուղիներում՝ Կիրովական—Ալավերդի, Ղուկասյան—Բոգդանովկա, Ստեփանավան—Կալինինո ժամանակին չապահովեց նորոգման աշխատանքների կատարումը, որի համար արժանացավ հանրապետության ղեկավարության արդարացի քննադատությանը:

Ճանապարհաշինարարների համաչափ աշխատանքների վրա խիստ ծանր անդրադարձան տարվա ընթացքում տարբեր տեղերում կատարված բարեկարգման ու ասֆալտապատման արտապլանային աշխատանքները:

Հարցն այն է, որ աղետի գոտում վերականգնման աշխատանքներում ընդգրկված թերևս ոչ մի կազմակերպություն շահագործման հանձնվող սոցիալ-կենցաղային օբյեկտների ու բնակելի շենքերի բարեկարգման ու ասֆալտապատման աշխատանքների կատարման համար ժամանակին չստեղծեց անհրաժեշտ արտադրական կարողություններ: Նման աշխատանքները կատարվեցին ավտոճանմինիստրության կազմակերպությունների ուժերով, ճանապարհների համար հատկացված նյութերով: Միայն Լենինական ու Ստեփանավան քաղաքներում, Սպիտակի Իտալական ավանում և Նորվեգական հիվանդանոցի տարածքում և այլ կառույցներում տեղադրվեց շուրջ 200 հազար քմ ասֆալտբետոն, որը հավասարազոր է 30 կմ ճանապարհի ասֆալտապատման:

Առավել ծավալուն ու պատասխանատու են ճանապարհաշինարարների 1990 թվականի տնտեսական տարվա պլանները: Նախատեսված է իրացնել 50,25 մլն ռ. պետական կապիտալ ներդրումներ կամ 23,4 տոկոսով ավելի, քան 1989 թ., կատարվելու է 47,1 մլն ռ. կամ շուրջ 1,9 անգամ ավելի շինմոնտաժային աշխատանք, գործարկվելու են 30,8 մլն ռուբլու հիմնական ֆոնդեր՝ նախորդ տարվա 22,6 մլն դիմաց: Շահագործման են հանձնվելու 64,8 կմ հարմարավետ ճանապարհներ:

Շարք կմտնեն Լենինականը շրջանցող ճանապարհի առաջին հերթը, Աշտարակը շրջանցող ճանապարհի 5 կմ հատվածը, Ջրաշեն-Շիրակամուտ նոր ճանապարհը և այլ օբյեկտներ: Աղետի գոտում ընդհանուր առմամբ կառուցվելու և վերանորոգվելու է 445 կմ ճանապարհ:

Բեռնափոխադրումների ծավալների մեծ աճի հետևանքով, հատկապես աղետի գոտու ավտոմայրուղիներում, մի քանի անգամ ավելացել է մեծ բեռնատարողությամբ մեքենաների երթևեկության ինտենսիվությունը և ճանապարհների բեռնալարվածությունը, որի հետևանքով արագորեն մեծանում է ճանապարհային ծածկերի մաշվածքը, առաջանում են ճաքեր, մեծ չափերի նստվածքներ, ալիքներ և այլ ձևախեղումներ, որոնք հնարավոր էլ չէ վերացնել բոլոր տեղերում միաժամանակ, մանավանդ ֆինանսական ու նյութական միջոցների ներկայիս սահմանափակության պայմաններում: Եվ ստացվում է, որ ընդամենը 10 տարի առաջ կառուցված ճանապարհը, նորմատիվ ծառայության ժամկետը չլրացած, արդեն չի բավարարում ժամանակակից պահանջներին և հիմնովին վերակառուցման կարիք է զգում:

Հանրապետությունում ստեղծված ծանր տնտեսական իրավիճակը հրամայաբար պահանջում է կարճ ժամկետում վերակառուցել շուրջ 270 կմ հիմնական մայրուղիներ, չհաշված ավելի քան 1500 կմ 25—30 տարի առաջ կառուցված հանրապետական ու տեղական նշանակության ճանապարհները, որոնք ժամանակին չեն վերակառուցվել միջոցների սղության պատճառով:

Ավտոմոբիլային ճանապարհների շրջափակումը Ադրբեջանի կողմից սկսվեց դեռևս 1988 թվականից, երբ Երևան—Ղազախ ճանապարհին Այգեհովիտ գյուղի մոտ Ադրբեջանով անցնող կարճ տարածքում երթևեկությունը դարձավ վտանգավոր և Երևան—Բերդ երթուղին փաստորեն փակվեց: Իջևանի ճանապարհաշինարարները կարճ ժամկետում կառուցեցին 4 կմ երկարությամբ Այգեհովիտ—Վազաշեն շրջանցող ճանապարհ:

Նման իրավիճակ անցյալ տարի ստեղծվեց Ղափանի շրջանում Սյունիկ—Ուժանիս ճանապարհին, որի 3 կմ փակվեց ադրբեջանցիների կողմից: Ստիպված կառուցվեց 6 կմ երկարությամբ շրջանցող նոր ճանապարհ Ուժանիսի ենթաշրջանի 5 բնակավայրերը շրջկենտրոնի հետ կապելու նպատակով: Փաստորեն արդեն երկրորդ տարին է փակված են Լեռնային Ղարաբաղը Հայաստանին կապող ավ-

տոնաճանապարհները, այդ թվում նաև Գորիս—Ստեփանակերտ մաճանապարհի Լաչինի շրջանով անցնող 11 կմ հատվածը։ Երթևեկության համար վտանգավոր են Իջևան—Նոյեմբերյան, Կրասնոսելսկ—Արծվաշեն, Գորիս—Ղափան և այլ ճանապարհների Ադրբեջանի սահմանի երկայնությամբ ընկած հատվածները։ Անվտանգ չեն նույնիսկ Վրաստանի ադրբեջանաբնակ շրջաններով անցնող ճանապարհները։ Մեղրու շրջանը հանրապետության հետ կապող միակ ճանապարհը մնացել է Ղափանով Երևան տանող երթուղին, որը շուրջ 130 կմ-ով ավելի երկար է, քան նախկինում Նախիջևանով անցնողը։

Ստեղծված պայմաններում ճանապարհաշինարարների առաջնահերթ խնդիրն է ապահովել Հայաստանը Վրաստանի հետ միացնող և դեպի հյուսիս դուրս եկող ճանապարհների արագ վերակառուցումը, ինչպես նաև Մեղրու, Ղափանի, Շամշադինի, Նոյեմբերյանի և այլ հեռավոր շրջանները հանրապետության կենտրոնի և այդ ու մյուս շրջանների սահմանամերձ բնակավայրերը շրջկենտրոնների հետ միացնող ճանապարհների վերակառուցումն ու բարեկարգումը։

Մեղրիից Քաջարան 48 կմ հատվածն անցնում է 2535 մ բարձրությամբ Մեղրու լեռնանցքով։ Ճանապարհի՝ 4—5 կարգով կառուցված 35 կմ հատվածն ունի մեծ երկայնական թեքություններ ու փոքր շառավղով շրջադարձեր, որի պատճառով, հատկապես ձմռան ամիսներին, այն չի բավարարում տրանսպորտի երթևեկության՝ մի քանի անգամ աճած ինտենսիվության պահանջները։ Տեխնիկատնտեսական հիմնավորումով այստեղ նախատեսվում է կառուցել 3,5 կմ երկարությամբ ավտոմոբիլային թունել և վերակառուցել 33 կմ ճանապարհը 3 կարգով։ Այստեղ անհրաժեշտ կլինի ներդնել շուրջ 70 մլն ռուբլի, որպեսզի տարվա բոլոր եղանակներին ապահովվի կայուն ու անվտանգ տրանսպորտային կապը։ Նախնական պայմանավորվածության համաձայն, առաջիկա հնգամյակում թունելի շինարարությունը նախատեսվում է իրականացնել ԽՍՀՄ տրանսպորտային շինարարության մինիստրության ուժերով։

Վերակառուցման աշխատանքներ են նախատեսվում Գորիս—Ղափան ճանապարհի առանձին վտանգավոր հատվածներում, որոնց մի մասն արդեն իրականացվում է Ղափանի ճանապարհաշինական և շահագործման վարչության ուժերով։

Շամշադինի շրջանը շրջափակման հետևանքով զրկվեց Ադրբեջանի Թովուզ կայարանում երկաթուղով բեռներ ստանալու հնարավորությունից. այն ներկայումս իրականացվում է Իջևան կայարանով։ Այժմ մեծ ծավալի աշխատանքներ են կատարվում Պառավաքար—Վազաշեն ճանապարհին։ Ուսումնասիրվում է նաև Շամշադինի շրջանը Իջևանի հետ կապող Նավուր—Գանձաքար ճանապարհի սկսված վերակառուցումն արագացնելու հարցը։

Շրջափակման դժվարություններից դուրս գալու հիմնական ուղին պետք է համարել Վրաստանի հետ կապի ուժեղացումը։

Ներկայումս Հայաստանը Վրաստանի հետ և Վրաստանի ճանապարհներով Սև ծովի ու հյուսիսային շրջանների հետ կապող ավտոտրանսպորտային երթուղիները չորսն են՝ Լենինականից Ղուկասյանով Բոգդանովկա, Կիրովականից Կալինինոյով Թբիլիսի, Կիրովականից Ալավերդիով Մառնեուլի—Թբիլիսի և Ստեփանավանից Աղքյորփիով Մառնեուլի։

Սրանցից, այսպես ասած «Կյանքի ճանապարհ» պետք է համարել Լենինական—Ղուկասյան—Բոգդանովկան։ Այս երթուղին ու նրա շարունակությունը Վրաստանի տարածքով կապահովի կապը Ախալցխա—Բաթում, Ախալցխա—Քութայիս—Սոչի, Բոգդանովկա—Ծալկա—Թբիլիսի—Բեսլան և Ախալցխա—Բորժոմ—Գորի—Ցխինվալի—Բեսլան ուղղություններով։

Այս երթուղու Լենինական—Ղուկասյան—Բոգդանովկա 67 կմ հատվածի 47 կմ անցնում է մեր հանրապետության տարածքով, որից 28 կմ անհրաժեշտ է շտապ վերակառուցել։ Ընթացիկ տարում կվերակառուցենք 15 կմ Լենինական—Քեթի լեռնանցք և Ղուկասյան—Բավրա հատվածները, իսկ մնացածը կավարտվի 1991 թվականին։ Ընդ որում, վերակառուցումը կատարվում է 2 կարգով, բարձրացնելով հողային պաստառը ճանապարհամերձ դաշտերից, որով զգալիորեն կհեշտացվի նաև ճանապարհի ձմեռային պահպանությունը։

Ինչ վերաբերվում է մինչև Բոգդանովկա 20 կմ Վրաստանի տարածքով անցնող հատվածին, որը նույնպես վերակառուցման խիստ կարիք ունի, ապա ներկայումս բանակցություններ են վարվում վրաց ճանապարհաշինարարների հետ, որպեսզի նրանք էլ վերակառուցեն իրենց հատվածը։



Վրաստանի հետ կապող հաջորդ երթուղին Կիրովական—Ստեփանավան—Կալինինո—Բոլնիսի—Մառնեուլի—Թբիլիսի ճանապարհն է՝ 126 կմ ընդհանուր երկարությամբ։ Այստեղ հանրապետության տարածքով անցնող 56-ից 30 կմ շտապ վերակառուցման կարիք ունի։ Ընթացիկ տարում նախատեսված է նորոգել 18 կմ, որից 13 կմ՝ Պուշկինյան լեռնանցքի ճանապարհինը։ Այս աշխատանքներն արդեն մոտենում են ավարտին, որը հնարավորություն կտա դադարեցնել երթևեկությունը երկրաշարժից վնասված թունելով և կատարել նրա հիմնական նորոգումը։ Երթուղու մնացած 12 կմ վերակառուցումը կկատարվի 1991 թվականին։

Սրանք այս երթուղու առաջնահերթ անհրաժեշտության հարցերն են։ Հետագայում պետք է իրականացվի նաև Գյառգյար և Գյուլագարակ գյուղերի շրջանցող ճանապարհի շինարարությունը։ Այս երթուղում ևս Վրաստանի տարածքով անցնող հատվածը՝ շուրջ 20 կմ երկարությամբ, մինչև Կազրեթ ավանը նույնպես կարիք է զգում վերակառուցման։

Մյուս երթուղին Կիրովական—Ալավերդի—Բագրատաշեն—Մառնեուլի ճանապարհն է՝ 119 կմ երկարությամբ, որից 85 կմ անցնում է Հայաստանի տարածքով։ Այս ճանապարհի մինչև Ալավերդի ընկած 32 կմ երկարությամբ հատվածը, որը կառուցվել է 25—30 տարի առաջ, անհրաժեշտ է վերակառուցել։ Ընթացիկ տարում նախատեսված է նորոգել 12 կմ, որից 4,5 կմ Հայկական ԽՍՀ Պետշինի կապիտալ շինարարության միջոցներով, կապված Նովոսելցովո—Կիրովական նոր ջրատարի շինարարության հետ։

Հաշվի առնելով 14 և 42 կիլոմետրերի բարդ լեռնային տեղանքը և երկաթուղագծի՝ ավտոճանապարհին մոտիկ անցնելու հանգամանքը, այստեղ անհրաժեշտ է կառուցել բարդ կամրջային անցումներ և երկաթուղային ուղեանցեր։ Ներկայումս միջոցներ են ձեռնարկվում այդ աշխատանքները ԽՍՀՄ տրանսպորտային շինարարության մինիստրության կազմակերպությունների միջոցով իրականացնելու համար։ Նրանց կողմից տարեկան 4—5 մլն ռ. շինմոնտաժային աշխատանքներ կատարելու դեպքում հնարավոր կլինի այդ հատվածի վերակառուցումն ավարտել առաջիկա հնգամյակում։

Մինիստրության մասնագետներն ուսումնասիրել են նաև Վրաստանի հետ կապող Ստեփանավան—Պրիվոլնոյե—Աղքյորփի—Մառնեուլի երթուղին՝ 84 կմ երկարությամբ։ Այս ճանապարհը Թբիլիսիին կապող նախորդ երկու երթուղիների հետ համեմատած ամենակարճն է և Վրաստանի տարածքում հիմնականում անցնում է հայաբնակ բնակավայրերով։ Այս տեսակետից այն կարելի է համարել համեմատաբար քիչ վտանգավոր։

Այս երթուղու Հայաստանի տարածքով անցնող 36 կմ-ը (մինչև Աղքյորփի գյուղը) կբարեկարգվի ու կկառուցվի կատարելագործված կապիտալ ծածկ, ըստ որում, Գայլի լեռնանցքից մինչև Աղքյորփի 14 կմ հատվածը հիմնովին կվերակառուցվի։ Վերակառուցման կարիք է զգում նաև Վրաստանի տարածքի 21 կմ հատվածը։

Զանգեզուրի և Լեռնային Ղարաբաղի կապը Երևանի հետ իրականացվում է Երևան—Եղեգնաձոր—Գորիս ավտոճանապարհով, որտեղ Վայքից Գորիս հատվածը անհրաժեշտ է վերակառուցել, և առաջին հերթին՝ Վայքից Որոտանի լեռնանցքով մինչև Գոռ Հայք հատվածը։ Վերակառուցումը նախատեսվում է իրականացնել գալիք հնգամյակում մեր ճանշինմինիստրության և ԽՍՀՄ տրանսպորտային շինարարության կազմակերպությունների ուժերով։

Լեռնային Ղարաբաղը Հայաստանի հետ կապող Գորիս—Լաչին—Ստեփանակերտ 106 կմ երկարությամբ երթուղին, որն արդեն երկրորդ տարին է չի գործում Ադրբեջանի ծայրահեղականների կամայականության պատճառով, մեր հանրապետության տարածքով անցնում է ընդամենը 26 կմ հատվածում։ Մնացած 80 կմ-ից 11 կմ անցնում է Ադրբեջանի Լաչինի շրջանով, իսկ 69 կմ՝ ԼՂԻՄ-ի տարածքով։ Հայաստանի տարածքով անցնող հատվածը դեռևս 1986 թվականին լրիվ վերակառուցվեց 3-րդ կարգի պարամետրերով, իսկ Ադրբեջանի հատվածը առ այսօր մնում է չվերակառուցված։

«Հայպետտրանս» նախագծային ինստիտուտը կազմել է ՀԽՍՀ սահմանից մինչև Ստեփանակերտ՝ Լաչին քաղաքի շրջանցումով ճանապարհի տեխնիկա-տնտեսական հաշվարկը (երկարությունը 84 կմ, հաշվարկային արժեքը՝ 99 մլն ռուբլի)։

Հայ ճանապարհաշինարարները մեծ աշխատանք են կատարում Լեռնային Ղարաբաղի Իսքնավար Մարգի ներքին ճանապարհային ցանցի կառուցման ու բարե-

կարգման ուղղությամբ: Արդեն պատրաստ են շուրջ 80 կմ երկարությամբ Կարմիր Շուկա—Դրախտիկ—Հադրութ և Արագյուղ—Թաղլար ճանապարհների ու մի շարք արհեստական կառուցվածքների նախագծերը: Մինիստրությունը ինքնավար մարզում կազմակերպել է ճանապարհաշինական ու կամրջաշինական երկու տեղամասեր՝ անհրաժեշտ մեխանիզմներով ու տրանսպորտային միջոցներով, քարջարդիչ ու բետոն շաղախող սարքավորումներով: Սկսված է նաև ասֆալտբետոնյա գործարանի տեղադրումը: Շրջափակման պայմաններում մեխանիզմները, կոնստրուկցիաներն ու շինանյութերը տարբեր միջոցներով տեղափոխելով ու այլ դժվարություններ հաղթահարելով, ճանապարհաշինարարները կառուցում են Կարմիր Շուկա—Հադրութ 32 կիլոմետրանոց ճանապարհի Ծակուռի—Տող, Տող—Ազոխ և Ազոխ—Դրախտիկ հատվածները: Ավարտված է նաև Ստեփանակերտ—Մարտակերտ ճանապարհին Բադարա գետի վրա 60 մետր երկարությամբ շուրջ կես միլիոն արժողությամբ կամրջի շինարարությունը:

1989 թ. ընթացքում ընդհանուր առմամբ կատարվեց շուրջ 3 մլն ռուբլու ճանապարհաշինական աշխատանք: Հզորացող արտադրական կարողությունները հնարավորություն կտան ընթացիկ տարում կատարել 1,5—2 անգամ ավել շինմոնտաժային աշխատանք:

Ճանապարհային ցանցի կատարելագործման աշխատանքը չի սահմանափակվում միայն երկրաշարժի հետևանքների արագ վերացմանն ու շրջափակման դժվարությունների հաղթահարմանը նպաստելով:

1990—1995 թվականներին ցանցի զարգացման մինիստրության մշակած ծրագրում նախատեսվում է մի շարք խոշոր բնակավայրերի շրջանցող ճանապարհների շինարարություն, ինչպես Կիրովականինը՝ Դիլիջան—Ալավերդի ուղղությամբ, Էջմիածնինը՝ Հոկտեմբերյան—Մարգարա ուղղությամբ, Ապարանի, Արթիկի, Նոյեմբերյանի և այլ բնակավայրերի շրջանցները: Դա ոչ միայն կնպաստի տրանսպորտի երթևեկության անվտանգության բարձրացմանը, այլ նաև այդ բնակավայրերի էկոլոգիական վիճակի բարելավմանը:

Ծրագրում առանձնահատուկ տեղ է հատկացվում ավտոմոբիլային ճանապարհների հատումները երկաթուղիների հետ տարբեր մակարդակներով իրականացնելուն: Նախատեսվում է երկաթուղիների հետ հատման տեղերում կառուցել 16 ուղեկամուրջ և վերացնել ներկայումս գործող գծանցերը:

Ճանապարհաշինարարների հայրենանվեր պլանների ու ծրագրերի իրականացման համար անհրաժեշտ է, որպեսզի նրանք ապահովվեն անհրաժեշտ ֆինանսական ու նյութական ռեսուրսներով, ունենան հզոր արտադրական կարողություններ: Ցավոք, այս հարցերը լուծվում են մեծ դժվարություններով ու մասնակիորեն:

Բավական է ասել, որ ճանապարհների նորոգման ու խնամքի աշխատանքների համար, որոնք կազմում են մինիստրության տարեկան կատարած աշխատանքների (գումարային արժեքով) շուրջ 70 տոկոսը, հիմնական ֆոնդային շինանյութերի՝ նավթային բիտումի, ցեմենտի, մետաղի, անտառանյութի հատկացումը կատարվում է պահանջարկի 50—60 տոկոսի չափով, ճանապարհների նշագծման համար անհրաժեշտ ներկանյութերինը՝ 20—25 տոկոսով, իսկ լուսանդրադարձիչ փայլաթիթեղ առհասարակ չի հատկացվում:

Միանգամայն անբավարար է մեխանիզմների ու հատուկ սարքավորումների հատկացումը: Ճանապարհաշինարարներն այսօր ապահովված չեն ավտոմատացված ասֆալտբետոնի գործարաններով, հայրենական արտադրության ու արտասահմանյան մակնիշի հզոր հողափոր բուլդոզերներով ու էքսկավատորներով, ավտոգրեյդերներով ու տոփանիշներով: Բավական է ասել, որ նրանք դեռևս չունեն ոչ մի հատ 40—50 տոննանոց կռունկ: Չունենալով բավարար քանակի սեփական ձյունամաքրման մեխանիզմներ, նրանք ստիպված են պետագրոարդից և այլ կազմակերպություններից վարձույթով վերցնել տարբեր մակնիշի 250—300 բուլդոզերներ: Միանգամայն անբավարար հիմքերի վրա է դրված ճանապարհների խնամքի ու ընթացիկ նորոգման աշխատանքների մեքենայացումը:

Վաղուց արդեն ժամանակն է, որպեսզի համապատասխան վերադաս մարմինները հատուկ ուշադրություն դարձնեն ճանապարհաշինության բնագավառին, հակառակ դեպքում ավտոտրանսպորտի, հատկապես ծանր բեռնատար մեքենաների երթևեկության ինտենսիվության արագ աճի պայմաններում անհնարին կդառնա ապահովել բնակչության և ժողովրդական տնտեսության պահանջները:

---



# ՂԵՎՈՆԴ ԱԼԻՇԱՆ

## (ԾՆՆԴՅԱՆ 170-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Ս. ՇՏԻԿՅԱՆ**

*... ԿԵՆՍԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ, Մխիթարյան միաբանության շատ անդամների նման համառոտ է այնքան, որ կարելի է շարադրել ընդամենը մի քանի նախադասությամբ։ Ծնվել է Կ. Պոլսում, 1820 թ. հուլիսի 18-ին, դրամագետ-հնահավաքի ոչ բազմանդամ ընտանիքում։ Ծննդավայրի հայկական քառամյա դպրոցն ավարտելուց հետո, 1832 թ. փոքր եղբոր՝ Սերովբե Ալիշանյանի հետ մեկնել է Վենետիկ՝ ուսումը շարունակելու և 1840 թ. դարձել Վենետիկի համբավավոր Մխիթարյան միաբանության անդամ։ 1848—1851 թթ. վարել է Մխիթարյան միաբանության պարբերականի՝ «Բազմավեպի» խմբագրապետի պարտականությունները, փոխարինելով նշանավոր Գաբրիել Այվազովսկուն։ Տարիներ շարունակ պատմություն և բարոյականություն առարկաներ է դասավանդել ինչպես Վենետիկի Մուրատյան, այնպես էլ Փարիզի Ռափայելյան վարժարաններում, այլևայլ առիթներով եղել է Եվրոպայի գրեթե բոլոր նշանավոր քաղաքներում (Հռոմ, Միլան, Վիեննա, Լոնդոն, Օքսֆորդ, Բրյուսել, Բեռլին, Մյունխեն, Ամստերդամ և այլն), բայց երբեք չի եղել Հայաստանում, 1872 թվականից մինչև կյանքի վերջը «անելուզակ կերպիւ» (իր բառերն են) ապրել է Վենետիկում, ավելի ճիշտ՝ Սուրբ Ղազար կղզում և այստեղ էլ մահացել 1901 թ. նոյեմբերի 9-ին (22) ու թաղվել կղզու ծայրամասում գտնվող «Մխիթարյան հարց գերեզմանոցում»։ Ահա, թերևս, բոլորը...*

*Ալիշանը գրական անդաստան իջավ որպես բանաստեղծ։ Նրա բանաստեղծությունների առաջին փունջը՝ «Երգք հանգրուանաց», հատկանշական վերնագրով, ունի 1840 թ. նշումը, թեև չի բացառվում, որ նա ավելի առաջ էլ գրած լիներ զանազան ստեղծագործություններ, ինչպես չափածո, այնպես էլ արձակ։ Իսկ Մխիթարյան միաբանությունը, մինչև Ալիշանի «ակավելը», արդեն մշակել էր չափածո արվեստի օրինաչափությունները։ Դրանք «հայրերը» պարտադրաբար ուսուցանում էին ամեն մի երիտասարդ ստեղծագործողի։ Դրանցով էին առաջնորդվում որևէ ստեղծագործություն արժեքավորելիս։ Գեղարվեստական ստեղծագործության չափանիշ համարվող այդ օրենքները համառոտակի հետևյալներն էին։ Քանի որ բանաստեղծությունը արվեստներից վսեմագույնն է, ուրեմն պետք էր գրել անպայման «Վսեմական գրոց լեզուաւ» (Մխիթարյանները նույնիսկ մինչև XX դարի սկիզբները շատ էլ հաշտ չէին աշխարհաբարի հետ) և սեփական հմտությունն ու լեզվին քաջատեղյակությունը ցույց տալու համար օգտագործել որքան կարելի է դժվարամարս, ինքնահնար բառեր ու ոճեր։ Ստեղծագործության համար որպես թեմա պետք էր վերցնել միայն «Բանք վեհագոյնք», այսինքն՝ Աստված, Քրիստոս, եկեղեցական տոներ ու արարողություններ, աստվածաշնչային սրբերի կյանքից վերցված այլևայլ դրվագներ, սակավ դեպքերում՝ հայոց պատմության առավել նշանավոր դեմքերն ու դեպքերը։ Կարելի էր նաև անդրադառնալ, և այն էլ միաբանության ներքին շահերից ելնող դիվանագիտության թելադրությամբ, զանազան «ազգայիններին»։*

*Այսպիսին էր գեղարվեստական գրականության համար մշակված այն անբեկանելի «ընթացքը», որի բնութագիրը համառոտիվ տվեցինք և, հասկանալի է, որ այդ բնագավառում առաջին քայլերն անող քսանամյա Ալիշանը, չէր կարողանալու և չէր էլ փորձելու հակադրվել իր նախորդներին. Նախորդներ, որոնցից շատերը «գործող անձ» էին հենց նրա ժամանակ։ Ասենք միայն, որ Ալիշանի հանդես գալու տարիներին հանրահայտ անուններ էին Գաբրիել Ավետիքյանն ու Եղիա Թովմաճանը, հայության մեջ լայն ճանաչում ուներ Մանվել Ջախջախյանը, իր գրական փառքի զենիթում էր Արսեն Բագրատունին։*

*Եվ Ալիշանն էլ, հասկանալի տրամաբանու-*

---

*ՇՏԻԿՅԱՆ ՍՈՒՐԵՆ ԱՐՇԱՎԻՐԻ — բանասիրական գիտությունների թեկնածու, հանրապետության պետական մրցանակի դափնեկիր, ԳԱ Մ. Աբեղյանի անվ. գրականության ինստիտուտի ավագ գիտական աշխատակից։*

# ԼՐԱԳՐՈՂԸ ՄԻՇՏ ՇԱՐՔՈՒՄ Է

Ղ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Այդ ՏԱՐԻՔՈՒՄ ՀԻՇԵԼՈՒ, պատմելու շատ բան է լինում: Մանավանդ լրագրողի համար: Աշխատանքի բնույթի բերումով հանդիպումներ հազարավոր մարդկանց հետ՝ սովորական ու անսովոր, առօրեական ու բախտորոշ... Իսկ հետևում տասնամյակներ են. այն էլ ինչպիսի՜: Բայց նա այդ մասին քիչ է խոսում. ոչ թե ասելիք չունի, այլ բնավորություն է, համեստության արտահայտություն: Հայաստանի շատ շրջաններում է աշխատել, թերթեր խմբագրել, գործ ունեցել նախկին և ներկայիս, ինչպես ընդունված է ասել, ղեկավար ոլորտի բազում աշխատողների, անվանի մարդկանց հետ: Մեկ ուրիշը գուցե առիթը բաց չթողներ այդ հանդիպումների մասին պատմելու, հպարտանալու, նաև այդ ձևով սեփական անձը մեծարելու համար: Հրանտ Հովսեփյանից նման պատմություններ դժվարությամբ են կորզվում:

Մամուլ է եկել տասնինը տարեկան հասակում: Ինչպե՞ս: Այն ժամանակվա համար շատ սովորական ճանապարհով: Գյուղատնտեսական ուսումնարանն ավարտելուց հետո աշխատանքի են նշանակել Արտաշատի շրջանի Այգեստանի ենթաշրջանի գյուղերում՝ որպես կրտսեր գյուղատնտես: Մինչ այդ էլ չափածոյի մեջ փորձեր անող երիտասարդը սկսում է թղթակցել հանրապետական պարբերականներին, պատմել հողագործների ոչ դյուրին աշխատանքի, գյուղում տեղի ունեցող բարդ գործընթացների մասին: Գրում և հաճախ էլ տպագրվում է «Խորհրդային Հայաստան», «Ավանգարդ», «Մաճկալ» թերթերում, ինչպես նաև ամսագրերում: Նա իր ակտիվ թղթակցական գործունեությամբ այնքա՞ն է աչքի ընկնում, որ որպես պատգամավոր մասնակցում է բանգյուղթղթակիցների հանրապետական առաջին համագումարին:

— Մի օր,— պատմում է Հրանտ Հովսեփյանը,— ընթերցելով օրաթերթի թարմ համարը, հանկարծ տեսա ՀԿԿ Կենտկոմի ծանուցումը և աչքերիս չհավատացի:

— Ի՞նչն էր այդքան անհավանականը...

— Ծանուցումը ազդարարում էր, որ լրագրողների երիտասարդ կադրեր պատրաստելու նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը Ծաղկաձորում կազմակերպում է մամուլի աշխատողների եռամսյա դասընթացներ: Այնուհետև տպագրված էին այդ դասընթացներում ընդգրկված շուրջ երեք տասնյակ ընկերների անունները: Պատկերացնո՞ւմ եք, նրանց մեջ էր նաև իմ անուն-ազգանունը...

— Նախապես չէի՞ն հայտնել կամ զրուցել Ձեզ հետ:

— Ո՛չ:

— Հետո՞:

— Այնուհետև, լավ հիշում եմ՝ 1931 թվականի հունիսի սկզբներին բոլորս Ծաղկաձորում էինք: Մինչ այդ մի դիպված ինձ հնարավորություն տվեց ծանոթանալու Եղիշե Չարենցի հետ: Դասընթացների գրեթե բոլոր մասնակիցներն էլ հանրապետության և Արցախի տարբեր շրջաններից ու քաղաքներից ժամանած ակտիվ բանգյուղթղթակիցներ էին, աղքատիկ, նյութական օգնության կարիք ունեցող տղաներ: Հիմա գուցե դժվար է պատկերացնել, բայց սկսնակ գրողների, լրագրողների նյութական օգնության հարցերը տնօրինում էր պետհրատը, ուր աշխատում էր Եղիշե Չարենցը: Ես այնպես էլ չիմացա, թե դա ինչ ֆոնդ էր, որտեղից էին այդ գումարները: Ինչևիցե, տղաները, որոնք արդեն գիտեին այդ ճանապարհը, ինձ համոզեցին անպայման դիմել Չարենցի օգնությանը: Ես ոչ մի կերպ չէի համաձայնում: Բայց Արշալույս Սիմոնյանն ու Վրույր Սարգսյանն ինձ ստիպեցին մտնել Չարենցի աշխատասենյակը: Ամոթխածությամբ ներս մտա, բարևեցի: Նրա հարցին, թե ինչու եմ եկել, պատասխանեցի, որ սովորելու եմ մամուլի աշխատողների վերապատրաստման դասընթացներում, եթե հնարավոր է նյութապես օգնել: Մի թեթև հայացքով զննեց մաշված հագուստս ու կոշիկներս ու անմիջապես ասաց. «Այո՛, իհարկե: Դիմում գրեք»: Դուրս եկա և դիմումով ներկայացա Չարենցին: Համապատասխան մակագրություն անելով՝ հաջողություն ցանկացավ: Ստացած գումարով գնեցի մի անդրավարտիք, չստեր և վերնաշապիկ: Այդ ժամանակների համար միանգամայն տանելի հագուստեղեն:

— Հետո՞:

— Մեկնեցինք Ծաղկաձոր, երեք ամիս սովորելուց հետո, օգոստոսին արտադրական պրակտիկա անցկացրի՝ հանրապետական երիտասարդական «Ավանգարդ» թերթում: Մասնակցում էի խմբագրության աշխատանքներին, ստուգայցեր կազմակերպում, կատարում տարբեր հանձնարարություններ: Փորձաշրջանը հաջող անցավ: Եկավ նշանակման օրը, ինձ մշտական աշխատանքի գործուղեցին Ալավերդու շրջանային թերթի խմբագրություն: Ապա տեղափոխվեցի Կիրովականի շրջանային թերթ, ուր նույնպես աշխատում էի որպես պատասխանատու քարտուղար:

Եվ, այսպես, Հրանտ Հովսեփյանը իր կյանքը մեկընդմիշտ կապեց մամուլի հետ:

Մեծ հայրենականը միլիոնների հետ փոխեց նաև Հովսեփյանի կենսաձևը. 1941 թվականի հուլիսին, երբ աշխատում էր հանրապետական ռադիոկոմիտեի վերջին լուրերի խմբագրությունում, հայրենիքի կոչով նա մեկնում է ռազմաճակատ: Նախ՝ նշանակվում է հայկական 409-րդ հրաձգային դիվիզիայի 675-րդ գնդի կապի վաշտի քաղղեկի տեղակալ, իսկ 1942 թ. սեպտեմբերին՝ 684-րդ գնդում՝ որպես հետախուզական վաշտի հրամանատարի քաղգծով տեղակալ: Ով քիչ թե շատ ծանոթ է ռազմաճակատային կյանքին, «հետախույզ» բառն ինքնին շատ բան է ասում՝ քաջություն, արագ և ճիշտ կողմնորոշվելու ունակություն, ճարպկություն և սառնասրտություն ու անսահման նվիրվածություն: Բնավորության այդ հատկանիշները մեկ անգամ չէ, որ դրսևորվեցին պատերազմի ահեղ տարիներին, մեկ անգամ չէ, որ քաղաշխատող Հր. Հովսեփյանն իր հավատարիմ մարտիկներով հանդիպել է թշնամուն դեմ առ դեմ, գոտեմարտի բռնվել, կատարել հրամանատարության դժվարին առաջադրանքը՝ «լեզու» բերել, անցել հակառակորդի թիկունքը, հետախուզել թշնամու դիրքերը, տեղեկություններ բերել նրա ստեղծած ամրությունների, ուժերի դասավորության մասին:

— 1942-ի ձմռանն էր,— վերհիշում է նախկին քաղղեկը,— Հյուսիսային Կովկասում, Մոզդոկ քաղաքի մոտակայքում ծանր մարտեր էին մղվում: Մեր գնդի հրամանատարի քաղգծով տեղակալ Աշոտ Հարությունյանը երեկոյան կանչեց իր մոտ ու հայտնեց, որ հաջորդ օրը վաղ առավոտյան մեր զորքերը պետք է վճռական գրոհ ձեռնարկեն: Անհրաժեշտ էր անպայման «լեզու» բերել՝ թշնամու դիրքավորումը և հատկապես կրակակետերը պարզելու համար:

Քաղղեկ Հովսեփյանը վերցնում է մի քանի փորձառու մարտիկների ու գործի անցնում: Նրանք չորսով էին: Գիշերային խավարում սողալով՝ հասնում են մեր դիրքերի առաջին գիծը, ապա աննկատ թափանցում հակառակորդի թիկունքը: Հիտլերականները նախազգուշական նպատակներով, երբեմն-երբեմն, աջից կամ ձախից, կարճատև կրակում էին գնդացիրներից ու ավտոմատներից: Մեր հետախույզները հանկարծ նկատում են մի գերմանացու, որը գնում էր խրամատների ուղղությամբ: Հավանաբար հերթափոխության ժամ էր: Ամեն ինչ տևում է մի քանի վայրկյան, և գերված գերմանացին քիչ հետո գնդի շտաբում էր, նրա տված տեղեկությունները հարուստ էին: Վաղ առավոտյան լայն ճակատով սկսված գրոհն ավարտվում է հաջողությամբ, մեր մարտիկներն ազատագրում են մի քանի բնակավայրեր և մոտենում Մոզդոկին: Առաջադրանքը կատարելու համար նա արժանանում է առաջին պարգևին՝ «Խիզախության համար» մեդալին:

Եվ այդպես, քանի՜-քանի անգամ Հր. Հովսեփյանը հետախուզության է տարել իր անվեհեր մարտիկներին, քանի՜-քանի անգամ, արհամարհելով մահը, նա արժեքավոր «լեզու» է բերել: Առաջադրանքներից մեկի ժամանակ վիրավորվել է: Դա 1942 թվականի դեկտեմբերի 19-ն էր: Լուսադեմին, երբ Հր. Հովսեփյանի ղեկավարած հետախուզական խումբը, առաջադրանքը հաջողությամբ կատարած, գերված գերմանացու հետ վերադառնում էր յուրայինների մոտ ու արդեն հասել էր մեր դիրքերին, պայթեց թշնամու ռումբը. բեկորները խոցեցին քաղղեկի աջ ձեռքն ու ոտքը: Մի քանի ամիս բուժվելուց և ապաքինվելուց հետո, Հովսեփյանը վերադարձավ ռազմաճակատ:

---

ՀՈՎԱԿԻՄՅԱՆ ՂԱԶԱՐՈՍ ԳԱՌՆԻԿԻ — ԽՍՀՄ ժուռնալիստների միության անդամ

— Մինչև ու՞ր մնացիք գործող բանակում։

— Մեր զորամիավորումը Կովկասյան նախալեռներից մարտերով հասավ մինչև Դոնի Ռոստով,— պատմում է նա,— ազատագրեցինք այդ հայաշատ քաղաքը, որից հետո մեզ ուղարկեցին թիկունք, ուր ծառայեցի մինչև 1944 թվականի վերջերը։

Ռազմաճակատում էլ Հովսեփյանը գրիչը վայր չի դրել։ Դիվիզիայի «Մարտական դրոշ» թերթի ակտիվ թղթակիցն էր։ Հայ ռազմիկների մասին գրել է բազմաթիվ հոդվածներ, թղթակցություններ և ակնարկներ։

Հայրենիքի հանդեպ իր պարտքը կատարած, մարտական պարգևների համար շքանշանների ու մեդալների արժանացած քաղղեկը, վերադառնում է հայրենի տուն, նորից նվիրվում այնքա՜ն սիրած աշխատանքին ու շուտով նշանակվում Ծամշադինի շրջանային թերթի խմբագիր։ Ապա նա խմբագրում է Աբովյանի շրջանային ու Հրազդանի միջշրջանային թերթերը։ Այդ տարիներին նա սովորում է ՀԿԿ Կենտկոմի եռամյա կուսդպրոցում, միաժամանակ հեռակա կարգով ավարտում հայկական մանկավարժական ինստիտուտը։

Տարիներ անց, երբ նա փոխադրվում է մայրաքաղաք, համալրում է նորաստեղծ «Երևան» օրաթերթի խմբագրության կոլեկտիվը, իսկ ապա աշխատանքի անցնում «Հայաստանի գյուղատնտեսություն» հանդեսի խմբագրությունում։ Այս երկու պարբերականներում էլ երկար տարիներ ղեկավարում է «Կուսակցական կյանք» բաժինները։

Ռազմաճակատային թերթերի բազմաթիվ համարներ, ուր տպագրված են Հր. Հովսեփյանի նյութերը, նա պահում է մինչև այժմ։ Դրանք, իրոք, թանկ մասունքներ են, որոնց մի մասը հանձնել է դպրոցական ռազմական փառքի թանգարաններին, ՀԽՍՀ գիտությունների ակադեմիայի Հայրենական մեծ պատերազմի պատմության կաբինետին։ Եվ ճիշտ է վարվել. չէ՞ որ այդ խունացած թերթիկները հայ մարտիկների, մեր ժողովրդի պատմության հերոսական էջերի իրական վավերագրերն են։

— Վերջին տարիներին, իմ կարծիքով, շատ է թուլացել երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությունը,— ասում է վետերանը։— Մինչդեռ դա շատ կարևոր գործ է։ Մեծ հայրենականի ռազմաճակատներում հայորդիների ցուցաբերած զանգվածային սխրագործությունները վկայում են, որ նրանք մեր ժողովրդի հերոս նախնիների, նաև քաջ ֆիդայիների արժանի հետնորդներն են։ Նրանք այնտեղ՝ Կովկասյան նախալեռներում, Ստալինգրադում, Ռուսաստանի և Ուկրաինայի տափաստաններում պաշտպանում էին նաև մայր Հայաստանը։ Ես համոզված եմ՝ հայ երիտասարդների ռազմահայրենասիրական դաստիարակությունը հիմա, առավել քան երբևէ կարևորագույն խնդիր է, և որին ամենաակտիվ մասնակցություն պիտի ունենանք նաև մենք՝ պատերազմի վետերանները։

Հրանտ Հովսեփյանը գտնում է, որ այդ գործի կազմակերպման միջոցներից մեկը երիտասարդությանը Հայրենական պատերազմի մասնակից հայ քաջորդիների օրինակով դաստիարակելն է։ Եվ այդ հայրենաշահ նպատակին է նվիրաբերվել անա արդեն մի քանի տասնամյակ։ Հայ ռազմաճակատայինների սխրանքների մասին նրա առաջին թղթակցություններն ու ակնարկները ռազմաճակատային թերթերում սկսեցին տպագրվել 1941 թվականից, ու շարունակվում են լույս տեսնել մինչև հիմա։ «Դա իմ հոգու պարտքն է նրանց հանդեպ, ովքեր իրենց կյանքը զոհաբերեցին մեր հայրենիքի պաշտպանության գործի համար,— ասում է նա,— նաև պարտքը այն համեստ, բայց քաջակորով մարտիկների հանդեպ, որոնց մասսայական սխրանքներով ջախջախվեց անարգ թշնամին»։

Հանրապետական մամուլում տպագրված տասնյակ ու տասնյակ ակնարկներին, բոլորովին վերջերս ավելացավ «Լույս» հրատարակչության հրատարակած «Հայրենիքի սերը սրտերում» վերտառությամբ գրքույկը, ուր ամփոփված են Մեծ հայրենականի հայ մարտիկներին նվիրված մի փունջ ակնարկներ։ Մեծ հաղթանակի 45-ամյա հոբելյանի նախօրեին լույս տեսած ժողովածուն լավ ընդունելություն գտավ ոչ միայն վետերանների, այլև երիտասարդ ընթերցողների շրջանում։

Վետերան-լրագրողի մյուս նախասիրած թեման գյուղն է։ Հովսեփյանը, թեև վաղուց բնակվում է Երևանում, բայց մշտապես կապված է գյուղի, նրա մարդկանց հետ։ Նրա հոգուն մոտ ու հարազատ է գյուղաշխարհը։ Եվ դա պատահական չէ. ծնվել ու մեծացել է գյուղացու ընտանիքում, գյուղատնտեսական կրթություն ստացել։ Նրա նյութերի հերոսներն են ռանչպար մարդը, հողի ու ջրի բարեկամը, տքնանքով բերք ու բարիք արարողը։ Այդ թեմային նա իր գրիչը անդավաճան ծառայեցնում է ահա վեց տասնամյակ։ Այդ մասին պարբերական մամուլում տպագրված բազմաթիվ նյութերից բացի, Հր. Հովսեփյանը հեղինակ է նաև մեկ տասնյակից ավելի գրքույկների։ Նրա գրչին են պատկանում «Հողը և մարդիկ», «Աշխատանքի հմայքը», «Կոչմանը հավատարիմ», «Հողի սերը», «Կանաչ այգիներ», «Կոլտնտեսության փառքը» և մի շարք այլ գրքույկներ, որոնք լույս են տեսել վերջին մեկ-երկու տասնամյակների ընթացքում։ Դրանք պարզ, անպաճույճ ակնարկներ են, դիմանկարներ, որոնք ընթերցողին պատմում են հանրապետությունում ճանաչում գտած մարդկանց՝ արտադրության առաջավորների կյանքի ու գործունեության մասին, գյուղատնտեսական արտադրության կազմակերպման և աշխատանքի փորձի, վարձակալության, տնտհաշվարկի ներդրման, իրենց համար ուղի հարթող այլ եղանակների մասին։

Այժմ, վերակառուցման փուլում, ագրարային նոր քաղաքականության իրականացման պայմաններում, սեփականության հողի, ինչպես նաև վարձակալության մասին օրենքների ընդունմամբ, արմատական վերափոխումներ են ակնկալվում գյուղում։ Հասկանալի է, այսօր բոլորին հուզող այդ պրոբլեմներն են դրված լրագրողի ելույթների հիմքում։ Դրանցում հետևողականորեն է անցկացվում այն միտքը, որ մեր ողջ հասարակությունը պարտավոր է գիտակցել՝ երկիրը պարենով լիովին կարելի է ապահովել միայն այն պայմանով, որ գյուղում արմատապես կատարելագործվեն արտադրական հարաբերությունները, որ գյուղացին սոցիալապես և տեխնիկապես ապահովված լինի։ Ընդ որում, գյուղի աշխատողին պետք է տալ առավելագույն ինքնուրույնություն, նախաձեռնություն, այնպես, որ նա իսկապես հողի տերը դառնա։ Այդ ամենի մասին նա գրում է խորությամբ, քաջատեղյակությամբ։

Մի անգամ, երբ զրուցում էինք ներկա պայմաններում լրագրողի դերի մասին, նա ասաց.

— Հիշում եմ, մի ժամանակ լրագրողներին հատկացված էր կուսակցության հանձնակատարի դերը։ Իսկ հայտնի բան է՝ հանձնակատարը ինքնուրույն ոչ մի քայլ իրավունք չունի անել։ Այդպես էր ոչ հեռավոր անցյալում։ Եվ, ահա, 1985 թվականի ապրիլից հետո ամեն ինչ փոխվեց։ Կարելի է վստահորեն ասել՝ այժմ ոչ մի թերթ կամ հանդես մեկը մյուսին նման չէ, գրեթե բոլորն իրենց ուրույն դեմքն ունեն։ Վերափոխվեց ժուռնալիստիկան և միաժամանակ հասարակության կյանքում բարձրացավ լրագրողի դերը։ Հետևապես լրագրողի սրբազան պարտքն է ընթերցողին մատուցել միայն կշռադատված, խորապես վերլուծված, ժողովրդի միասնության ու գործնական խնդիրների լուծմանը նպաստող նյութեր։

Կոմունիստ լրագրողին խորապես հուզում են մեր հասարակության մեջ, կուսակցության մեջ տեղի ունեցող խմորումները։ Այդ ամենի մասին նա խոսում է սրտացավությամբ ու անհանգստությամբ։

— Դեմոկրատացումը, հրապարակայնությունը,— ասում է նա,— հնարավորություն տվեցին վերացնել պատմության շատ «սպիտակ բծեր», որը, ցավոք, լի է սխալներով, ողբերգական էջերով։ Դրանցում, ինձ թվում է, մեղավոր են կոմունիստները, և մենք բոլորս՝ ղեկավարից մինչև շարքայինը, պետք է քաջություն ունենանք, ամբողջ կուսակցության հետ միասին, բաժանելու անցյալի սխալների համար պատասխանատվությունը։ Միաժամանակ չպետք է մոռանալ, որ միլիոնավոր կոմունիստներ, անկուսակցական բանվորներ, գյուղացիներ ու մտավորականներ, տեղյակ չլինելով կատարվող ձևախեղումներին, իրենք ազնվորեն ու անմնացորդ նվիրվածությամբ մասնակցել են նոր կյանքի կառուցմանը։ Չէ՞ որ Մեծ հայրենականի ռազմաճակատներում առաջինը կոմունիստներն էին նետվում գրոհի, միշտ այնտեղ էին, ուր ամենից դժվար էր։ Այդ օրհասական, կենաց ու մահու օրերին, մարտիկները ռազմաճակատներում մասսայաբար ընդունվում էին կուսակցության շարքերը։ (Ի դեպ, Հր. Հովսեփյանը ևս կուսանդամ է դարձել 1943 թվականին՝ ռազմաճակատում)։ Այս ամենը ևս չի կարելի մոռանալ։ Մենք պետք է հարգանքով վերաբերվենք մեր պատմությանը...

— Ընկեր Հովսեփյան, բայց քիչ չեն այն կոմունիստները, ովքեր շարունակելով կրել կուստոմս, չեն խորշում հանդես գալու կուսակցությունը ժխտելու դիրքերից, անխղճորեն ջնջում են նրա պատմությունը, երկրի անցած ամբողջ ճանապարհը հանգեցնելով միայն ստալինյան-բրեժնևյան սխալների։

— Այո՛, նրանք մոռանում են, որ կուսակցությունը ինքը նախաձեռնեց վերա-

կառուցումը, ինքը սկսեց հին կառույցվածքների ու մեթոդների անխնա քննադատությունն ու վերանայումը, նորացման կուրսի իրականացումը: Հիմա մենք բոլորս վերանայում ենք մեր հայացքները, ճշգրտում մեր վարվելակերպը, մեր պատկերացումները կոմունիստական կուսակցության դերի, հասարակական կյանքում կոմունիստի տեղի մասին: Ամեն մեկը յուրովի է լուծում այդ խնդիրը: Ոմանք պարզապես հայհոյում են՝ առանց ընտրություն կատարելու արտահայտությունների մեջ, մյուսներն անաղմուկ հանձնում են կուստոմսերը և մի կողմ քաշվում՝ սպասելով ավելի բարենպաստ ժամանակների: Անշուշտ, շատերի համար կուստոմսից բաժանվելը դյուրին չէ: Ոմանք այդ քայլը համարում են քաղաքացիական արիություն, ազնվություն: Իսկ իմ կարծիքով իսկական արիությունն ու ազնվությունը պահանջում են այս դժվարին ժամանակաշրջանում մնալ կուսշարքերում և բոլոր ուժերը նվիրաբերել կուսակցության իրավացիորեն խաթարված հեղինակության վերականգնմանը, նրա արմատական նորացմանը: Գտնում եմ, որ ապագա ծրագրերի մեջ հիմնական ուղղությունները պետք է դառնան մարդու հոգին փրկելու խնդիրները, այդ թվում՝ կուսակցության և ժողովրդի բարոյական մաքրման հարցերը: Ես դեմոկրատական սկզբունքների կողմնակից եմ, բայց դեմ եմ ամենաթողությանն ու անարխիային:

Հիմնական աշխատանքին զուգընթաց Հր. Հովսեփյանը ակտիվորեն մասնակցում է հասարակական աշխատանքներին, հատկապես հանրապետության ժուռնալիստական կազմակերպության գործունեությանը: Ահա արդեն մեկ տասնամյակ է, ինչ նա ղեկավարում է ՀԽՍՀ ժուռնալիստների միության վարչության քաղաքային և շրջանային թերթերին օգնող ստեղծագործական հանձնաժողովը: Այդ առնչությամբ նա հաճախակի է լինում շրջանային թերթերի խմբագրություններում, ուր վետերան լրագրողին, այդ համեստ ու բարի, մամուլին մինչև վերջ նվիրված պատկառելի մարդուն ընդունում են սիրով ու հարգանքով՝ համոզված, որ ստեղծագործական հանձնաժողովի նախագահը այս անգամ ևս (տվյալ թերթը խորապես ուսումնասիրելուց հետո) կտա գործնական խորհուրդներ, կօգնի լուծելու որոշ հարցեր, տասնամյակների իր փորձը կհաղորդի երիտասարդներին:

Հանրապետության վաստակավոր ժուռնալիստ Հրանտ Հովսեփյանը այսօր էլ շարքում է: Թեև մի քանի տարի է, ինչ հանրապետական կարգի անհատական թոշակառու է, բայց չի ուզում թողնել լրագրողի իր սիրած գործը: «Քաղաքական զրուցակից» հանդեսի խմբագրությունում աշխատում է եռանդով, բարեխղճությամբ ու նվիրվածությամբ, պարբերականի էջերում լուսաբանում ագրարային պրոբլեմները, գյուղում տեղի ունեցող նոր պրոցեսները:

Ավագագույն լրագրողի ցուցաբերած աշխատասիրությունն ու բարեխղճությունը, իրոք, օրինակ է ոչ միայն երիտասարդների համար: Առաջադրանքը ստանալուց անմիջապես հետո նա ձեռնամուխ է լինում հարցի ուսումնասիրությանը, մանրազնին ստուգումներ կատարում, զրուցում բազմաթիվ մարդկանց հետ, մի քանի անգամ ճշգրտում յուրաքանչյուր անուն, փաստ ու թիվ: Մի խոսքով, նրա պատրաստած նյութերում որևէ անճշտություն, սխալ կամ թյուրիմացություն բացառվում են:

Բազմիցս ականատես եմ եղել, թե ինչպես է նա կատարում հանձնարարությունը, նրա անդուլ աշխատանքին միշտ հետևել եմ հիացմունքի վերածվող զարմանքով: Իսկ չէ՞ որ նա արդեն անցել է յոթանասունհինգի սահմանը:

— Հասարակության լուրջ փոփոխությունների պահին,— ասում է Հրանտ Հովսեփյանը, — ավելի է մեծանում լրագրողի պատասխանատվությունն ու պարտքը երկրի, ժողովրդի առջև:

---

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 8, 1990 թ.: Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն:

Հանձնվել է շարելու 18.08.1990 թ.: Ստորագրվել է տպագրելու 12.09.1990 թ.: Չափսը 70×108 1/16: Թուղթ՝ տպագրական № 2: Օֆսեթ տպագրություն: 8,4 պայմանական տպագրական մամուլ: 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ: Տպաքանակը՝ 7832: Պատվեր՝ 807: Գինը՝ 25 կոպ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2:
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.